1916 № 50.—Դեկտեմբերի 11

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆՆ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ռ. 50 կ.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ռ., կէս տարուան 2 ռ.: Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասարաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 20 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից:

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

## ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ.* 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ. 5. Պոստարկղ և յայտարարութիւն:

Թերթը բաղկացած կլինի 8 մեծադիր երեսներից և լոյս կտեսնէ կիրակի օրերը:

Բաժանորդագինն է տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ռ. 50 կ., հայ դպրոցների, ուսուցիչների, հայ հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ռուբլի, կէս տարուան 2 ռուբլի: Արտասահման 5 ռուբլի, կէս տարուան 3 ռ.:

Բաժանորդագրութիւն ընդունւում է խմբագրատանը, Թիֆլիս, Արասարաղեան հրապարակ, № 7 և Ընկերութեան գաւառական ճիւղերի վարչութիւններում:

Խմբագիր՝ Ս. Յարութիւնեանց
Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-Ի ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ

*Խմբագրութիւնս Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհրդի համաձայնութեամբ ի նկատի առնելով ներկայ ճգնաժամը՝ թղթի պակասութիւնը, թանգութիւնը և տպագրութեան ծանր պայմանները, որոշեց, թողնելով հին ձևը 4 և 3 ռ., պակսեցնել ժամանակաւորապէս ծաւալը, այն է՝ որ շաբաթաթերթը կազմուած կը լինի ոչ թէ 16-ից այլ 8 երեսից միևնոյն դիրքով։*

*Խմբագրութիւնս կըջանայ թերթը ըստ ամենայնի հետաքրքրական և բովանդակալից դարձնել, տալով նաև երբեմն յաւելուածներ։*

# Պետական կեանք

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ

*Նոյեմբերի 29-ի նիստում Սինադինօն վերջացնում է իր ճառը հետևեալ պահանջներով. «1) Հացի և անասնաբուծական արտադրութիւնները նոյնքան անհրաժեշտ պէտք է համարուեն, ինչպէս ռումբերը բանակի համար. 2) Արևմտեան Ռուսաստանի գիւղատնտեսութիւնը պիտի աշխատէ միայն պաշտպանութեան համար. 3) Պէտք է ստեղծուի մատակարարման նախարարութիւն. 4). Պարենաւորման կազմակերպութիւնը պէտք է յանձնուի կառավարութեան 5 անդամից և օրէնսդրական հիմնարկութիւններից 8 անդամից բաղկացած մի պատասխանատու կոմիտէի, որ գրաւման բացառիկ իրաւունքներ պէտք է ունենայ. 5). Երկիշխանութիւնը պէտք է վերացուի։ Անհրաժեշտ է միակ պետական իշխանութիւն... Յիշեալ խնդիրների աջող լուծման համար կառավարութիւնը պիտի աշխատէ օրէնսդրական հիմնարկութիւնների հետ կատարեալ համերաշխութեամբ»։*

*Ն. Օկալովիչը ասում է, որ բանկերը փոխանակ պատերազմի՝ թանգութիւն առաջացնելու համար են միջոցներ բաց թողնում։ Նրանց վրայ պետական քննութիւն պէտք է հաստատել։ Պետութիւնը շահաւէտներին (սպեկուլեանտներին) և թիկունքի թալանչիներին անխնայ պէտք է յանձնէ զինուորական-դաշտային դատարաններին։ Այդ միակ միջոցն է փրկելու երկիրը։*

*Գերմանիայի կողմից հաշտութեան առաջարկին Պետական Դումայում ամենից առաջ պատասխանեց արտաքին գործերի նոր նախարար Պոկրովսկին... «Այն բանակից, որի վրայ է ընկնում անօրինակ պատերազմի և նրա բորբոքած հրդեհի պատասխանատուութեան ամբողջ ծանրութիւնը, հնչած հաշտութեան խօսքերը, չնայած որ շատ անսովորական էին, բայց անսպասելի չէին դաշնակիցների համար։ Պատերազմի $2^1/_2$ տարուայ ընթացքում Գերմանիան քանիցս յիշատակեց հաշտութեան մասին. Նա ասաց այդ մասին իր բանակին ու ազգաբնակութեանն ամեն անգամ, երբ մի զինուորական ձեռնարկութիւն պէտք է վճռուէր, ամեն անգամ, որ արտաքին տպաւորութեան ձգտող մի աջողութիւն ունենար։ Բայց նրա փորձերն ապարդիւն անցան։ Այժմ յոյս ունենալով մի ճեղք առաջացնելու մեր անքակտելի դաշնակցութեան մէջ, Գերմանիան պաշտօնապէս առաջարկում է հաշտութեան բանակցութիւններ սկսել։ Ըստ էութեան գերմանական առաջարկը ոչ մի իրական ցուցմունք չէ պարունակում այն հաշտութեան համար, որի մասին խօսւում է առաջարկում։ Կենտրոնական պետութիւնները այդպիսով յոյս ունին ապահովել իրենց ժողովուրդների գոյութիւնը, պատիւը և ազատ զարգացումը և յարմար կըլինէին տեւական խաղաղութեան համար, միաժամանակ սպառնում են պատերազմը շարունակելու մինչև վերջը և արիւնալի պատերազմի պատասխանատուութիւնը մեր ու մեր դաշնակիցների վրայ բարդելու... ...Ռուս կառավարութիւնը զզուանքով է մերժում ներկայումս կռւին ընդհատելու միտքը, որով Գերմանիային հնարաւորութիւն տուած կըլինէր օգտուելու վերջին առիթից իր գերիշխանութեանը ենթարկելու Եւրոպան։ Ռուսաստանի այս անյողդողդ որոշման կատարելապէս համաձայն են մեր բոլոր քաջարի դաշնակիցները։ Մենք ամենքս համակուած ենք պատերազմը մինչև յաղթական վախճանը շարունակելու կենսական անհրաժեշտութեամբ և չենք թոյլ տալ մեզ կասեցնել այդ ճանապարհից թշնամիների և ոչ մի թակարդով»։*

*Ապա Շիդլովսկին գլխաւոր կուսակցական հատուածների կողմից մի յայտարարութիւն է անում, որ ընդունւում է միաձայն. «Լսելով արտաքին գործերի նախարարի յայտարարութիւնը՝ Պետական Դուման ամբողջովին միանում է դաշնակից կառավարութիւնների վճռական մերժումին ներկայ պայմաններում հաշտութեան որևէ բանակցութիւն մղելու մասին և իր կողմից ենթադրում է, որ հաշտութեան գերմանական առաջարկը միայն մի նոր ապացոյց է մեր հակառակորդների տկարացման և մի կեղծաւոր քայլ, որ այլ նպատակ ունի՝—պատերազմի և նրա շարունակուելու պատասխանատուութիւնը հեռացնելու իրենցից հասարակական կարծիքի առաջ, որ վաղաժամ հաշտութիւնը կըլինէր միայն կարճատև զինադադար և իբր հետևանք կունենար նոր արիւնալի պատերազմ և ազգաբնակութեան կողմից նոր, ծանր զոհեր, որ տևական խաղաղութիւնը հնարաւոր է միայն մեր թշնամիների զինուորական հզօրութեան վրայ վճռական յաղթանակ տանելով և Գերմանիայի վերջնական հրաժարումով այն ձգտումներից, որ նրան դարձրին համաշխարհային պատերազմի և նրա բերած բոլոր սարսափների մեղաւորը—և անցնում է հերթական հարցերին»։*

*Նոյնպիսի հաստատ մերժողական պատասխան է տալիս և Դումայի նախագահը։*

*Սոցիալ-դեմոկրատների և աշխատաւորականների ներկայացուցիչները բողոքում են, որ իրենց անդամներին Դումայի նիստերից կամ ժամանակին խօսքից զրկել են, ուստի հնար չունենալով լրիւ կերպով արտայայտելու ժողովրդի կարծիքը հաշտութեան մասին՝ հրաժարւում են հարցի քննութիւնից և քուէարկութիւնից։*

*Դեկտեմբերի 2-ի նիստում իշխ. Մանսըրեւն ասում է... «Երբ գրաւեցինք Պրուսիայի և Գալիցիայի արևելեան մասերը՝ Մեասոյեդովականութիւնը երևան եկաւ, բայց այդ չընկճեց մեր բանակը։ Երբ հանդէս եկաւ Սուխոմլինովականութիւնը՝ մեր բանակը սովորեց նահանջել... Դուման ճիշտ պատասխան տուեց հաշտութեան առաջարկին, բայց անպատասխանատու կառավարութեան հետ գործակցել անհնար է»։*

*Ապա նախագահը յայտնում է, որ միջոցներ է ձեռք առել որպէսզի պատգամաւորների ճառերն ըստ հնարաւորին լրիւ հրատարակուեն, քանի որ հասարակութեան մէջ տարածւում են կեղծուած ճառեր։*

*Երևի այդ բանի շնորհիւ է, որ արդէն մայրաքաղաքի թերթերը տպագրեցին նոյեմբերի 1-ին և 3-ին արտասանած «պատմական ճառերը»։*

# Ներքին տեսութիւն

## ՆԵՐԿԱՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ

### ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

*Խօսելով ներկայ տնտեսական ճգնաժամի մասին*), ի միջի յլ պատճառներու, մենք մատնանիշ արած էինք սպառողներու անակ ու փախստականներ) թուի բազմանալը, որը, մեր կար-իքով, այդ ճգնաժամի գլխաւոր պատճառներէն մէկն է։ Բոլո-րին էլ հասկանալի է, որ երբ աշխատողներու թիւը կը պակսի, ակ, ընդհակառակը, սպառողներու թիւը կը բարձրանայ, այն ա-ձն ստացուած արդիւնաբերութիւնը չըբաւականանալով եղած պահանջներուն, նիւթերու արժէքը կը բարձրանայ, որովհետև, ամենէն առաջ, նման պայմաններու մէջ կը թանգեն աշխատող ձեռքերը։*

*Պետութեան ու երկրի շահերու պաշտպանութիւնը մեզմէ լած է միլիոնաւոր բազուկներ, որոնք երբեմն կը մշակէին ու արդիւնաբերէին. երբեմնի այդ արդիւնաբերող ձեռքերը, այսօր, պառող բերաններու վերածուած են։ Զանազան պատճառներով ու զանազան վայրերէ իրենց հայրենի հողը լքող միլիոնաւոր փախստականներ (մօտ 3, 5 միլիոն), այսօր, ռուս հողի վրայ սպա-ռող բերաններ են՝ առանց երբէք մշակելու և արդիւնաբերելու։*

*Ներկայ յօդուածով մտադրութիւն չունենք խօսելու բանակի մասնակցութեան մասին՝ հողի մշակութեան ի նպաստ, ինչ որ կը կատարուի պատերազմող եւրոպական երկիրներու մէջ։ Չենք անկար նոյնպէս կանգ առնել մասնաւորապէս փախստականնե-րու մասնակցութեան հարցին վրայ։ Բայց և այնպէս յաջորդ տո-ղերով առաջարկելով մի քանի անհրաժեշտ միջոցներ՝ կերպով մը պայքարելու ներկայ տնտեսական ճգնաժամին դէմ, մենք բոլո-րովին անտես չպիտի առնենք փախստականներու աջակցութիւնը՝ մասնաւորելով մեր խօսքը Կովկասի որոշ մասի ու հայ փախըս-տականներու շուրջը։*

*Մեզի համար, երբ մէկը՝ որը կը մտահոգուի տակաւ սովի վերածուող ներկայ տնտ. ճգնաժամով, ամենէն աւելի կարևոր հար-ցն այն է, թէ ինչը՝ ժողովուրդը ու բոլոր սպառող բերանները ինչպէ՞ս կարելի է աշխատանքի մղել, որպէսզի նրանք կարողա-նան մասամբ միայն բաւականութիւն տալ իրենց անհրաժեշտ կարիքներուն։*

*Հիմնական նպատակը ընդգծելէ յետոյ, մենք պարտաւոր ենք ըսելու, որ խնդրին մօտենալու ենք սակաւ ինչ մասնագի-տօրէն, որովհետև մեր կարծիքով բաւական չէ միայն արտասուք թափել սովահին ու սովամահ տեսնելով, այլ անհրաժեշտ է նրանց տնել միջոցներ, որոնցով պիտանի իրենց ապրուստը ապահո-վել։ Եւ միւս կողմէն, չմոռնանք, որ ներկայ ահաւոր պատերազմը անելով աւելի տնտեսական մի գոյամարտ, մենք սովրելու ենք ւաքապէս ու մեր սեփական միջոցներով ապրել, իմանալու ք ուրիշներու դէմ պայքարելու գաղտնիքը, որպէսզի գիտնանք ահել ու պահպանել մեր հասարակական ինքնութիւնը։*

*

*Պատերազմող երկիրներու, նոյնիսկ չէզոք երկիրներու մէջ ողովրդի սնունդի համար անհրաժեշտ եղող նիւթերու հայթայ-ումը ամենագլխաւոր խնդիրն է եղած՝ ստեղծուած բացառիկ այմաններու հետևանքով։ Ոչ միայն անհրաժեշտ է պատերազմ ղի յաղթութեան համար, այլև կարևոր է մտահոգուել բանակի ը՝ թիկունքը գտնուած ժողովրդի ապրուստի խնդրով, որպէս-պիտուորը չմտածէ տունը թողած իւրայիններու մասին, որ-զի բանակի կարիքներուն բաւականութիւն տրուի և ներքին խլրտումներ չառաջանան ի վնաս ընդհանուր նպատակին։ Այս-տեղից կը հետևի, որ պատերազմող մի պետութիւն չէ կարող մոռնալ ժողովրդի պարէնաւորման հարցը, որը այնքան հիմնաւոր ու խելօք կարգադրուած կարող է լինել, որքան որ նոյն երկրի կառավարութիւնը յստակօրէն կըմբռնէ իրերու դրութիւնը և, միւս կողմէն, ժողովուրդը գիտակցօրէն կը կատարէ իր պարտա-կանութիւնը։*

*Այս բոլորէն յետոյ մեզի կը մնայ գիտնալ թէ որո՞նք են հողի արդիւնաբերութեան միջոցները, ի՞նչ ձևով կարելի է ընդ-հանրացնել այդ միջոցները, կամ ինչպէ՞ս գործադրել այդ միջոց-ները լայնօրէն օգտուելու համար՝ տրուած պայմաններու համե-մատութեամբ։*

*Հ ո ղ ի  ա ր դ ի ւ ն ա բ ե ր ո ւ թ ե ա ն  մ ի ջ ո ց ն ե ր ը.—Հողը այն բնական գործարանն է, որը ուղղակի կամ անուղղակի ճա-նապարհներով, մեզի կը հայթհայթէ մեր սնունդի համար պէտք եղած բոլոր անհրաժեշտ նիւթերը։ Ցորենը կստացուի ուղղակի հողէն, մինչդեռ միսը, հաւկիթը, կաթը, իւղը և այլն կստացուին անուղղակի կերպով, որովհետև հողի արդիւնաբերած զանազան նիւթերն են, որոնք կենդրոնական մեքենայի միջոցով յիշուած սնունդներու կը վերածուին։*

*Ուղղակի հողէն ստացուած սննդարար նիւթերու պատրաս-տութեան համար երկու միջոցներ կան—փոքր ու մեծ մշակու-թիւններ՝ պարտէզներ ու դաշտեր։ Մենք կը խօսենք այս երկու մշակութիւններու մասին առանձին-առանձին, կը բացատրենք անոնց իմաստը, մշակութեան ձևը, և կը փնտռենք գտնել միջոց-ներ, որոնցով թերևս կարելի լինի մի գործնական հետևանքի յանգել։*

### *1. ՓՈՔՐ ՄՇԱԿՈՒԹԻՒՆ (*Petite culture)

*Գիւղատնտեսութեան մէջ «փոքր» մշակութիւն կոչւում է այն մշակութիւնը, որը հողի մեծ տարածութիւն չի պահանջում։ Պարտէզներ, բանջարանոցներ, պտղատու ծառեր, որթատուններ այդ կարգին կը պատկանեն։ Ընդհանրապէս նման մշակութիւնը կը կատարուի քաղաքներու մէջ կամ շուրջը, այն գլխաւոր պատ-ճառով, որ քաղաքացին աւելի պահանջկոտ է, քան թէ գիւղացին։ Հայ իրականութեան մէջ մեր գիւղերը, մեծ մասով, չեն հետևիր այդ մշակութեան, այնպէս որ փոքր մշակութեան արտադրած նիւթերը կամ կստանան քաղաքներէ, կամ հակառակ պարագա-յին, բոլորովին զուրկ կը մնան։ Ցաւալի է ասել, որ նոյնիսկ Կովկասի հայ իրականութեան մէջ, օրինակ պարտիզամշակու-թիւնը (*jardinage*) մի առանձին հոգատարութեան առարկայ չէ եղած, եթէ չասենք, որ բոլորովին մոռցուած է։*

*Փոքր մշակութեան միջոցով կստանանք մի կարգ կարևոր նիւթեր—կաղամբ, ճակնդեղ, գետնախնձոր, լոբի, ոսպ, կարոս, սոխ, սխտոր, բողկ, շողգում, դդում, զանազան տեսակի մրգեր ու պտուղներ, բոլորն էլ անհրաժեշտ նոյնիսկ մեր առօրեայ սնունդի համար։*

*Պարտիզամշակութիւնը, եւրոպական իմաստով ու փոքր սահմանով, զուարճութեան ու ապրուստի միջոց է միանգամայն։ Եւրոպայի մէջ նոյնիսկ գիւղական ամեն մէկ ընտանիք ունի իր պարտէզը, իր փոքր մշակութիւնը, որու խնամքը յաճախ տան մնացող ընտանիքի անդամներու պարտականութիւնն է։ Մեր մէջ հողի մշակութիւնն ընդհանրապէս ամօթ կը համարուի։*

*Աշխատող ձեռքեր չունենք, պարտիզամշակութիւնը մոռ-ցուած է, մեր գիւղերն ու քաղաքները զուրկ են բնական գեղեց-կութիւններէ ու հաճոյալից աշխատութիւնէ։ Միւս կողմէն փոքր մշակութեան արդիւնքներու արժէքը տակաւ կը բարձրանայ, իսկ ոչ մէկը կը համաձայնի հրաժարիլ։*

*Ի՞նչ անելու է այդ պակասը լրացնելու ու եղած պահանջը բաւականացնելու համար։*

*Է ա կ ա ն  պ ա յ մ ա ն ն ե ր.—Ջնայած հողի փոքր տարածու-*

**) Տես «Համբաւաբեր» № 46, 47։*

թեանը, պարտիզամշակութիւնը աւելի շատ աշխատութիւն կը պահանջէ, որը յաճախ ժամանակի վատնում կը թուի, բայց անհրաժեշտ է աւելի շատ հասոյթ ունենալու համար։

Միշտ արդիւնաբերելու սահմանուած պարտէզի հողը պէտք է խորը փորել ու առատօրէն աղբել. մի կարգ բանջարեղէններ (սոխ, կաղամբ և այլն) շթիլ անելու է. պէտք է գետնախնձորի (pomme de terre—կարտոֆիլ) մէկ մասը հողով ծածկել, որպէսզի ամուլ կերպով հասակ չբարձրացնէ։ Անհրաժեշտ է հողը մաքրել օտար ու վնասակար բոյսերէ, որոնք հողէն կը խլեն սննդարար հիւթեր և թոյլ չեն տար, որ արևի լոյսն ու ջերմութիւնը լայնօրէն ողողեն մեր ցանած բոյսը։ Հողի մէջ եղած ներքին խոնաւութիւնը չկորսնցնելու համար փափկացնելու է հողի արտաքին կեղևը։

Պարտիզամշակութեան մէջ այս էական պայմանները չըլլինելով շարունակական ու միապաղաղ, կը պահանջեն սակայն աշխատութիւն ու ժամանակ, թէև այդ աշխատութիւնը կատարուելով ընդհատ-ընդհատ, յաճախ հաճոյալի են, քան թէ պարտադիր։

Աղբ.—Պարտիզամշակութեան մէջ մենք սովորաբար կը գործածենք մարդու կղկղանք (matière fècale), որու սննդարարութիւնն ընդունելով, չմոռանանք, որ այդ աղբը բոյսին կը հաղորդի իր վատ հոտը, եթէ զանազան հիւթերու (հող, մոխիր) խառնուրդով չըչէզոքացնենք անոր այդ յատկութիւնը։

Իբր աղբ գործածելու է տաւարներու աղտաթորութիւններ, որոնք նոյնպէս օգտակար են։ Կարելի է օգտակար աղբ պատրաստել տան աւելուցքէ, կենդանիներու մնացորդներէ, չգործածուելիք կանաչ խոտերէ, որոնք բոլորը լեցնելու է փոսի մը մէջ և թողնելու է, որ փտտին և հասունան։

*

Ասինք արդէն, որ պարտիզամշակութիւնը հաճոյքի ու արդիւնաբերութեան միջոց մ'է։ Ամեն մէկ ընտանիք իր պարտէզն ունենալու է, նոյնպէս իւրաքանչիւր հաստատութիւն—դպրոց, որբանոց, վանք, գործարան, երկաթուղու կայան և այլն։

Մենք կը ծանրանանք գլխաւորապէս դպրոցներու և որբանոցներու վրայ։ Այսօր, առանց նկատի ունենալու Կովկասի հայերու նման հաստատութիւնները, մի քանի տասնեակ փախստականական դպրոցներու և որբանոցներու մէջ պատսպարուած են մի քանի տասնեակ հազարաւոր որբեր ու դպրոցականներ՝ երկու սեռի ու տարբեր տարիքներու, և որոնք բոլորը սպառող բերաններ են առանց մի սոխ արտադրելու։

Եթէ երբեք մեզի համար մտահոգութեան առարկայ դարձած է նրանց ներկան ու ապագան, չպէտք է մոռնալ, որ նրանք, մեծ մասով, հողի ու ջուրի զաւակներ լինելով, անհրաժեշտ է, որ վաղը վերադառնան իրենց հողին ու ջուրին, իսկ այդ բանի համար միայն մտաւոր պատրաստութիւնը բաւական չէ։ Առողջ միտք ու առողջ մարմին ունենալու անհրաժեշտութիւնը անվիճելի է առողջ մի հաւաքականութիւն պատրաստելու համար։ Որպէսզի այժմէն իսկ մեր վաղուայ սերունդը նախապատրաստուած լինի հողի մշակութեան և ջուրի գործածութեան, անհրաժեշտ է, որ այժմէն փորձուին։ Որբանոցներ ու դպրոցներ պահող ընկերութիւններու առաջին պարտականութիւնն է կից ունենալ պարտէզներ էլ։

Նայած տեղի բնական պայմաններուն, պարտիզամշակութիւնը տարուայ ամեն եղանակին էլ աշխատութիւն կը պահանջէ։ Եթէ որոշ տեղերու համար ձիւնը արգելք մ'է, այլ վայրերու մէջ գոյութիւն չունի այդ արգելքը, այնպէս որ կարելի է անմիջապէս գործի անցնել։ Անհրաժեշտ չէ, որ օրուայ բոլոր ժամերուն մեր նորահաս սերունդը զբաղուի միմիայն դպրոցական աշխատութիւններով. շատ դիւրութեամբ կարելի է այնպէս կարգադրել, որ սրանց մէջ թէ դպրոցական և թէ պարտէզի մշակութիւնով զբաղուին։ Նայած պայմաններուն, կարելի է օրուայ առաւօտեան ժամանակը յատկացնել ուսման, իսկ ճաշէ յետոյ պարտիզի աշխատանքի, կամ ընդհակառակը։ Անցեալները Փր[...]սացի մի տիկին, որու քով ապրեցի ամբողջ մի տարի, հետև[...]լը գրում է ինձ.

«Իմ փոքրիկ Գաստոն սովորեցաւ դպրոցը թողնել [...] դասարանը աւարտելէ երեք շաբաթ առաջ, որպէսզի կրնայ [...] օգնել իմ դաշտային աշխատանքներուն, մանաւանդ որ այս տարի անցեալ տարուայ չափով մեր կառավարութիւնը չկրցաւ մե[...] զօրք տրամադրել եղած աշխատութիւնները գլուխ հանելու հա[...]մար....»։

Կըմբռնէ՞ք կարիքի ստիպողականութիւնը։ Նոյնը փոքր մ[...]շակութեան միւս բոլոր ճիւղերու համար։

## 2. ՄԵԾ ՄՇԱԿՈՒԹԻՒՆ—grande culture.

Եթէ փոքր մշակութիւնը հողի մեծ տարածութիւն չի պ[...]հանջում, ընդհակառակը մեծ մշակութիւնը հողի մեծ տարած[...]թիւն կը պահանջէ։ Չէ կարելի և չէ ընդունուած պարտէզի [...] մէջ ցորեն կամ գարի ցանել, եթէ մեր մտադրութիւնն է ա[...] բոյսերէն մեր հացը պատրաստել։

Այս մշակութեան մէջ կը պատրաստուին հացահատիկներ[...] զանազան բոյսեր՝ մեծ քանակութիւնով ու անասունի խոտ[...] բոյսերու մշակութիւնը միայն աշխատող ձեռքերով չի կատա[...]ւում, այլև կը գործածուին շարժուն (անասուններ) և անշար[...] գործիքներ (արօր, գութան, փոցխ և այլն) էլ։ Գալով աղբի գ[...]ծածութեանը, մեր մէջ դեռ չէ ընդունուած նման հողերու պ[...]պարտացումը, այլ կը թողնենք անմշակ, որպէսզի բնական ձ[...]ւով հողը պարարտանայ։ Շատ ցանկալի էր, որ հողի պակա[...]թիւնէ նեղուած շրջաններու մէջ սովորութիւն դառնար մա[...] կղկղանքի գործածութիւնը, որու չեղջակոյտերը մեր գիւղ[...] օդը կապականեն. միւս կողմէն վառելիքի պակասութեան գ[...]խաւոր պատճառով մենք ի վիճակի չենք անասուններու ա[...] գործածելու հողի պարարտութեան մէջ։

Մեծ մշակութիւնը բնաւ նման չէ փոքր մշակութեան։ Ե[...] վերջինս աշխատանքի հաճոյքի բաժինն էլ ունի, առաջինը, [...]կայն, յարատև ու ծանր աշխատութիւն է պահանջում՝ գումար[...] մեծ դրամագլուխ։ Եթէ փոքր մշակութեան մէջ որբանոցներ[...] դպրոցները մեծ բաժին կարող են ունենալ, նոյնը չէ կարել[...] ել մեծ մշակութեան համար, քանի որ այստեղ աշխատութ[...] ծանր է։

Ա. Մաքսապետեան

(Շարունակութիւնը հետևեալով)

---

## ԽՆՈՒՍ-ՄՈՒՇԻ ՇՐՋԱՆԻ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐԸ

Հայկ. Կենտ. Կոմիտէի Մշոյ շրջանի լիազօր Կարօ-Սա[...] Կոմիտէի դեկտեմբերի 1-ի նիստին ներկայացրեց մի ընդար[...] զեկուցում հայ փախստականների և գերութիւնից ազատուած[...] արդի վիճակի մասին, որից քաղում ենք հետևեալը.

Սեպտ. 26-ին մեկնեցինք Խնուս-Մուշ հետևեալ պար[...]նութիւններով. ա) Պարենաւորման մի ճիւղ ստեղծել Խնուսու[...] պաշար հասցնել հասարակութեան. բ) Մուշի և ուրիշ գծերից ազատուողներին հասցնել անմիջական սնունդ, տեղափոխել և [...] նամել որբերին. գ) Հաւաքել սերմացու ապագայի համար։ Հա[...]լով Խնուս՝ ծանօթացայ իրերի դրութեան հետ։

Այդ սուր կարիքները հետևեալներն էին. ա) Գետ[...]նպաստ ստանալու խնդիր որ մինչև հիմա 8 ամիս է ձգձգ[...] բ) Հացի սովը և մեր պահեստների ալիւրից ու պաշարից [...]

լինելը. գ) Պարենամթերքի պատրաստութիւն, որ պիտի լինի կովկասից. դ) Մի որբանոց հիմնելու անհրաժեշտութիւն, քանի որ հնարաւոր չէ ձմեռ ատեն երեխաներին տեղափոխել։

—Իմ տրամադրութեան տակ աշխատողները բաժնել իմ երկու խմբի

ա) Խնուսի

բ) Մուշի

*Պահեստի գործունէութիւնը.*—Մինչև հիմա դեռ մեզ չը յաջողուեց ալիւրի և շաքարի պաշար ունենալ Խնուսում։ Նոյն տեսակի պաշար գնելու համար ժողովուրդը բաւական դըժուարութիւն է կրում, որովհետև չստանալով պետական նպաստ, չունի և փող։ Ժողովուրդը սովից ազատելու համար Կոմիտէիս նախկին գործունէութեան ընթացքին Դուգախի սննդակայանի համար առնուած 550 փութ ցորենը անմիջապէս տեղափոխել տուինք Խնուսի մեր պահեստը և ծախեցինք մեզ նստած գնով՝ 5 ր. 10 կ., մինչդեռ դուրսը կոտը ծախւում է 9 ռ.։

Ալիւրի փոխադրութիւնը թեթևացնելու համար, տեղական ժողովրդից ձեռնարկեցինք կազմել 150 սայլերի մի սայլատարք (արօզ), որը Սարիղամիշից պիտի փոխադրէր ալիւր Խնուս՝ փութը 4 ռ. հաշուով։ Ալիւրները իրենց ժամանակին չը հասնելով Սարիղամիշ, ստիպուեցինք թողնել սայլերը Քաղաքների Միութեան 1500 փութ ալիւրները և ուրիշ իրեր փոխադրելու։ Մեզի համար միայն փոխադրուեց 100 փութ ալիւր։ Մեր Խնուսի սեփական սայլատարքով փոխադրուեց շաքար և որբանոցի վերաբերեալ պաշարեղէն։

*Մի օրեայ վիճակագրութիւն.*—Որպէսզի շրջանի ամբողջ ազգաբնակութեան թիւը մեզի յայտնի լինի, և կարող լինինք պետական նպաստ ստանալ, արդիւնքը հետևեալն է.

| | |
|---|---|
| ա) Խնուսի շրջանում | 3343 |
| բ) Կումկումի շրջանում | 600 |
| գ) Մուշի շրջանից և նոր ազատուողներ | 1000 |
| | 4943 |

Ինձ հետ բերելով վիճակագրութեան թղթերը, եզրակացութիւնը ներկայացուեց Գեներալ Թամամշեանին, որը կարգադրեց անմիջապէս 20,000 ռ. փոխադրել IV. կորպուսին՝ տեղի ազգային կազմակերպութեան միջոցաւ բաժնելու հասարակութեան։

*Որբանոց.*—Նոր եկող որբերի փոխադրելը գտնելով անյարմար, որոշեցինք տեղում պահել, և ստացանք վարչութիւնէդ կարգադրութիւն՝ մնայուն որբանոց ունենալու։

*Գերիների ազատման գործը.*—Իմ տրամադրութեան տակ դրուած էր 2,500 ռ. գերիների ազատման Թիֆլիսի յանձնաժողովի կողմից, Անդրանիկի ձեռքով, գործադրելու համար գերիներ ազատելու։ Թիֆլիսում, սեպտեմբերի վերջերին, 60 սասունցիների և դաշտեցիների ներկայացուցիչները խնդիրք ներկայացրին, որպէսզի իրենց դիւրութիւն տրուի Երկիր մտնելու և աշխատելու գերիների ազատման։ Իմ տրամադրութեան տակ փող դնող մարմինը համաձայնուեց միայն 10 հոգու երկու ամսուայ ապրուստի փողը վճարել 500 ռ.։ Հակառակ այդ կտրուկ պատասխանին այժմ այնտեղ կան մօտ 100 հոգի, որոնք գիտեն Մոտկանի, Սասունի, Հազոյի, Ֆարղինի բոլոր ճանապարհները և լեռնանցքները, շահագրգռուած են գերիների ազատման գործով, որովհետև ունին ազգականներ և սիրելիներ, որոնք կարող են ազատուել։ Իմ առաջին գործը եղաւ դասաւորել այդ ուժերը։ Այժմ այնտեղ կան 25 հոգինոց ձիաւորների մի խումբ, բացի այդ 10 հոգուց՝ կան նաև 60 ուրիշ երիտասարդ։

ա) Ամեն առաւօտ տասնեակով անցնել լեռնաշղթայի երեք գծերի վրայ, որտեղից սովորաբար գալիս են նոր ազատուողները, և սպասում են մինչև ուշ գիշեր։

բ) Նոր եկողներին անմիջապէս առաջնորդել դէպի ապահով գիւղի սննդատու կայանը։

գ) Լրտեսել լեռնամասը և երբ դիւրութիւն գտնուի, լուր հասցնել մօտերքը գտնուող հայերին, նրանց ազատելու իրենց սեփական միջոցներով։

Այդ խմբերի աշխատանքի շնորհիւ ազատւում են նոր եկողները զանազան փորձութիւնների ենթարկուելուց։

Թէ մեր ուղարկած մարդկանց բերած տեղեկութիւններից և թէ նոր ազատուողներու պատմածից պարզւում է, որ կան հայեր հետևեալ վայրերում.

ա) Մոտկանի և Խարզանի շրջանում կան ոչ նուազ քան 5000 հայ։

բ) Խուլփի, Ֆարղինի, Հազրոյի և Սիլվանի դաշտում մօտ 8000 հայ, բացառապէս երիտասարդներ։

գ) Սիլվանի և Հատնովի մէջ կան 150 զինուած երիտասարդներ ապստամբուած։

Ներկայ տարուայ մայիսին և յունիսին Մոտկանի շրջանից մեզ հետ յարաբերութիւն ունեցող Մահմէտ աղան ներկայ սեպտեմբերին փորձում է գալ Մուշ և յաջողում է հանդիպել մերոնց, և այդպէս դարձեալ սկսւում է քիւրդերի միջոցաւ գերիների խումբ-խումբ գալը։ Լուրը տարածւում է քիւրդերի մէջ, լսում են վերոյիշեալ վայրերում գտնուած հայեր ևս, ու այդպիսով սկսւում է հոսանքը երիտասարդ խմբերի, որոնք գալիս են ինքնաբերաբար և Սասնոյ լեռնամասում դիմաւորւում են մեր տրամադրութեան տակ գտնուած 15—20 երիտասարդներու կողմէ։

Մինչև նոյեմբերի 10-ը, մէկուկէս ամսուայ ընթացքին ազատուած են 380 շունչ, որոնցից 120-ը միայն քրդերի ձեռքով, իսկ մնացած 260-ը ինքնաբերաբար։ Իմ մեկնելէ յետոյ 5 օրուայ ընթացքին եկել են 250 շունչ, որով ընդամենը 630 շունչ։

Մեզ մօտ եկող քրդերը ներկայացնում են բանական պահանջ։ Առաջուց խոստացուած է նրանց ամեն մէկ հայու համար տալ ՄԷԿ ՈՍԿԻ։ Մեր տրամադրութեան տակ չլինելով մեծ գումար, չէինք կարող ընդառաջ գնալ նրանց պահանջներին։ Առաջին երկու խմբերը բերող քրդերին տրուած է երկու անգամով 16 օսմ. ոսկի, Քաղաքների Միութեան այնտեղի ներկայացուցչի կողմից որպէս ժողովրդական նպաստ։

Երկու շրջանի քիւրդեր ոսկէ դրամի պահանջ են ներկայացրել, մէկը Մոտկանի, միւսը Խուլփի կողմ։ Անհրաժեշտ է տրամադրել 200 օսմ. ոսկի, փոխադրելով իւրաքանչիւր շրջան 100 ոսկի, այսպիսով մեծ յոյս կունենանք սպասելու բազմաթիւ խմբերի։ Նկատի ունենալով ձմեռ ժամանակը և ձիւնապատ լեռները, երբ անցնելիս շատեր ցրտահար կը լինին, քիւրդ աղաները խօսք են տալիս այդ փողով պահելու մինչև գարուն իրենց մօտ գտնուած հայերին։ Վերը յիշուած 150 զինուած ապստամբները—որոնք գտնւում են Մուշից 80 վերստ հեռու, չգիտէին հայերի գոյութիւնը Մուշում, և հաշտուած լինելով իրենց պայմաններին, դիմել են խիստ միջոցների քիւրդերի և թիւրքերի դէմ, իրենց գոյութիւնը պահպանելու համար։ Դրանց գոյութիւնը մի տեսակ դիւրութիւն է տալիս այդ լեռնանցքով անցող փախստականներին։

*Մշոյ Սննդատու կայանը.* — Հոկտեմբեր 20-ից սկսած Մուշում մեր ներկայացուցիչների կողմից ընդունւում են նոր ազատուող գաղթականները. Նրանք մնում են երկու օր այնտեղ, ստանալով թէյ, շաքար, հաց և մեր յատուկ առաջնորդների միջոցաւ բերւում են Խնուս, որոնք տեղաւորւում են շրջանի գիւղերում։

*Դպրոցները.*—Հիմքը դրած ենք երեք դպրոցի Խնուսում և շրջանի գիւղերում, իւրաքանչիւրը 50-ական աշակերտով։ Հրաւիրուած են տեղական ուսուցիչներ։

*Սերմնացու.*—Խնուսի շրջանում ցանքեր չեն եղած սերմնացուի չգոյութեան պատճառով։ Գտնուած հին ցորենները չեն բուսնում, շրջականներում ցորեն գտնելու յոյս բոլորովին չկայ։ Քանդուած գիւղացութեան տնտեսութիւնը վերականգնելու միակ միջոցը նրանց սերմնացու հասցնելն է։ Եթէ այս գարնան հնարաւորութիւն չի լինի ցանքերը կազմակերպելու, կստեղծուի տնտեսական այնպիսի քայքայում, որը միայն երեք-չորս տարի

*յետոյ կը վերականգնուի, մինչեռ եթէ 5,000 բնակչութեան, նուազագոյն հաշուով, 5,000 պուդ սերմացու ցորեն տանք, եկող տարուայ օգոստոսից սկսած 8 ամիս ապահովուած կը լինենք ամբողջ ազգաբնակչութիւնը։*

---

## ԿՐԹԱԿԱՆ ԳՈՐԾԸ ՂԱԶԱԽԻ ՇՐՋԱՆՈՒՄ

*Տարին բոլորւում է այն օրից, երբ գաղթականական հոսանքը մուտք գործեց Ղարվանսարայի շրջանը։ Տնից, տեղից, հայրենիքից զրկուած այդ մի բուռը գաղթականները տեղաւորուեցին շրջանի ինը գիւղերում։ Գաղթականների թիւը նոյնը չմնաց, այլ ժամանակի ընթացքում գոյութիւն ունեցող նահանջների պատճառաւ հետզհետէ աւելացաւ, այնպէս որ այսօր 1850-ի է հասնում։*

*Գաղթ. ապրում են կառավարութեան նպաստներով և Հ. Կ. Յանձնաժողովի միջոցներով. բացի այդ Յանձնաժողովը բացած ունի այժմ շրջանի ութը գիւղերում գաղթ. դպրոցներ, որտեղ ուսանում են 500-ի մօտ գաղթական երեխայ (հաշուած և Ղարվանսարայի որբանոցի որբ աշակերտները)։*

*Դրութիւնը գաղթական դպրոցներում, բաղդատմամբ անցեալի, այս տարի բաւական լաւ է երևում. պահանջուած դպրոցական իրերը, թէև մի քիչ ուշ, բայց բաւական առատ ստացւում են։ Դպրոցներէն երեքը ունին մինչև Դ. բաժանմունք։ Աշակերտութիւնը շատ սիրով յաճախում է դպրոց, միայն թէ ֆիզիքականը շատ խեղճ և վատ դրութեան մէջ է. չունին ոտնաման, հագուստ (բացառութեամբ որբերի). ամառը մի կերպ տանելի էր. բայց ձմեռը արդէն եկաւ։*

*Շրջանի ութը գաղթ. դպրոցներում առայժմ կան 22 ուսուցիչ-ուհիներ, որոնցից 11 գաղթական ուսուցիչներ՝ Կ. Կոմիտէի կողմից որոշուած և ղրկուած, իսկ մնացածները եկ.-ծխ. դպ. ուսուցիչներ են, որոնք առանձին ժամեր պարապում են ռուսերէն, կրօն և այլն մի կարգ առարկաներ։ Ղարվանսարայի աշակերտաց թուի (122) համեմատ հարկաւոր է դեռ մէկ ուսուցիչ ևս։*

*Գաղթ. ուսուցչաց ռոճիկների չարատանջ հարցը (գոնէ Ղարվանսարայի շրջանի գաղթ. ուսուցչութեան համար) մասամբ իր լուծումն ստացաւ. ուսուցիչը, անշուշտ միայն ամուրի, ստանալով 45 ռ. ռոճիկ և 5 ռ. բնակարանի վարձ, մասամբ կը կարողանայ իր գոյութիւնը քարշ տալ կեանքի այս անտանելի թանգութեան ժամանակ։*

*Դպրոցները ամենայն եռանդով շարունակում են յառաջանել. միայն թէ կէս օրից յետոյ պարապելու դրութիւնը շատ վատ է ներգործում աշակերտ-ուսուցչի վրայ։ Մի քանի գիւղերում յաջողուեց հենց առաւօտներն սկսելու պարապմունքները, իսկ մնացածներում շրջանի լիազօրը ամենայն եռանդով աշխատում է հնար եղածին չափ ևս նոյն դրութեան մէջ դնել։*

*Դպրոցներում (Ղարվանսարա, Վ. Աղդան և Սև-Քար) արհեստ մտցնելու համար վերջերս լիազօր՝ Տ. Մեսրոպ հայր Եղիկեանի և գաղթ. ուսուցիչների ժողովը ընդառաջ գնալով նախ. պ. Ս. Յարութիւնեանի արծարծած մտքերին («Համբաւաբեր» № 38 խմբագրական), որոշեց հնար եղածին չափ, բացի ուսումից, մի քանի ժամ նուիրել սովորեցնելու աշակերտներին պարզ, դիւրամատչելի արհեստներ—զամբիւղագործութիւն, կազմարարութիւն և այլն... և յաջողութեան պարագային կամաց-կամաց ընդարձակել, զարգացնել գործը։*

*Շատ լաւ դրութեան մէջ չէ նաև այս տարուայ շրջանիս եկ.-ծխ. դպրոցների վիճակը. մինչև այժմ դեռ միայն վեց գիւղում բացուած են դպրոցներ, տեղ-տեղ դպրոցները յանձնուած են քահանայ-ուսուցիչներին, տեղ էլ կայ, 100 աշակերտի համար վարձուած է մէկ ուսուցիչ։ Ղարվանսարան, որ կենտրոն է մի քանի գիւղերի, 130 աշակերտի դաստիարակութեան գործը յանձնուած է մի քահանայի, որ հովւում է նաև երեք գիւղ։*

*Ըստ երևոյթին Ղարվանսարայի եկ.-ծխ. դպ. հոգաբարձութիւնը աշխատում է այս տարի մի քիչ աժան պրծնել. ծրագրած է միմիայն 3—400 ռուբլիանոց ուսուցիչ վարձել, այն էլ հանդիպած պարագային։ Շատ անտարբեր է նաև գիւղի երիտասարդութիւնը և հասարակութիւնը հանդէպ դպրոցին։*

*Իրազեկ*

---

## ԳԱՒԱՌ

*ԱԽԱԼՑԽԱ, Նոյեմբ. 18-ին.—Ամսիս 14-ին, շրջակայ անտառից, ձիով քաղաք վերադառնալիս, անյայտ չարագործները դարան մտած հրացանաձգութիւնով սպանել էին տեղացի փայտավաճառ Աբրահամ Անխոնեանին և սրով կտրտել էին։ Համարւում է պատճառը վրէժխնդրութիւն, քանի որ մարդասպանները նրանից ոչինչ չեն տարել։*

*Հանգուցեալը այն Անխոնեանն էր, որ 4—5 տարի առաջ մի խումբ մարդկանց հետ միասին, իբրև «Դաշնակցական» դատապարտուեց և Սիբիր աքսորուեց և վերջն ազատուելով վերադարձաւ հայրենիք։ Անցեալներում նա վարել է մի քանի հասարակական պաշտօններ. եղել է Կ. Հ. Բ. Ընկ. Տեղական ճիւղի և Դրամատիկ Ընկ. Վարչութեան անդամ և այլն։*

*Առայժմ մարդասպաններից ոչ ոք չէ յայտնագործուած։*

*—Անցեալ ամսի 24-ին քաղաքումս մեռաւ ալիւրավաճառ Համազասպ Ծիրացեանը, որի միակ ժառանգը՝ Արամ Ծիրացեանը բարեգործական նպատակով նուիրեց 500 ռ., որից 100-ական ռ. Կ. Հ. Բ. Ընկ. Տեղական ճիւղին, Տեղական որբանոցին և Էջմիածնայ Եղբայրական Օգնութեան 50-ական ռ., Տեղական Հայ Կանանց Բ. Ընկ. և Հայկ. Կոմիտէտին և հայոց դպրոցի չքաւոր սաներին և այլն։*

*—Քաղաքումս մանուկների մէջ դեռ խիստ կերպով ճարակում է քութէշ (սկարլատինա) հիւանդութիւնը։*

*—Քաղաքումս հացի, կերոսինի և շաքարի խիստ տագնապ է։ Ալիւրի պաշարը հատելով, ժողովուրդը խիստ նեղւում է։ մօտ օրերս սպասւում է քաղաքի անունով մի քանի վագոն ալիւր։ Մեզանում հացի փութը մինչև այսօր վաճառւում էր 8 կոպէկով. ասում են որ պէտք է բարձրացնեն։*

*Թ.*

---

*ՀԱՇՏԱՐԽԱՆ.—Թեմիս նոր Առաջնորդ Մեսրոպ եպիսկոպոսը սկսել է եռանդուն գործունէութիւն։ Առաջնորդարանում անընդհատ նիստեր են կայանում զանազան հասարակական խնդիրների մասին։ Ամենակարևոր տեղը բռնում է դպրոցական խնդիրը. արդէն որոշուած է բանալ առայժմ օրիորդաց դպրոց։*

*Գաղթականների հարցը ևս շատ է զբաղեցնում տեղւոյս հասարակութեան, երբ նա Մեսրոպ եպիսկոպոսի մի շարք զեկուցումներից տեղեկացաւ, թէ ինչ դժոխային պայմաններում են գտնւում մեր տաճկահայ եղբայրները։*

*Սկսուած է ժողովարարութիւն գաղթականների և գերիների ազատելու օգտին։ Առայժմ Մեսրոպ եպիսկոպոսը ժողովել է 11,000 ռ., բայց յոյս կայ աւելի խոշոր գումար ստանալու։ Տեղական հայ ժողովուրդը շատ էր կզզիացած իր վայրում և այստեղ միլիոնների կտակներ են արուած հենց Հաշտարխանում գործադրելու, բայց Մեսրոպ սրբազանին յաջողուած է համոզել, որ*

հաշտարխանցիք պարտական են իրենց նիւթական միջոցներով օգնութեան հասնել հայութեանը բուն երկրում։

Պէտք է յուսալ, որ Հաշտարխանցիք մօտ ապագայում ցոյց կըտան գործունէութիւն և հայ ժողովրդի ծով կարիքների բուն վայրերում։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան 3-ն դեկտեմբերի կայացած Խորհրդի որոշումները.—

—Տալ ուսուցիչ պ. Լևոն Բարայեանին միանուագ նպաստ 200 ռ. բժշկութեան համար։

—Համաձայն Կարսի շրջանի կառավարչի միջնորդութեան յատկացնել նոյն շրջանի Օգուզլի գիւղի դպրոցի շինութեան և բացման համար միանուագ նպաստ 500 ռ.։

—Ընդունել Թիֆլիսի Արհեստաւորների Ակումբի հիւանդանոցիս երեք մահճակալի ծախսի համար ուղարկուած 150 ռ. և յայտնել շնորհակալութիւն, ծանուցանելով թէ այդ երեք մահճակալները կունենան ցուցանակներ՝ «Թիֆլիսի Արհեստաւորների Ակումբի անուան» վերտառութեամբ։

—Տալ գրադարանի ծառայող Վ. Երզնկեանին առողջանալու համար միանուագ նպաստ 50 ռ. և 10 ռ. ճանապարհածախք հայրենիք գնալու։

—Համաձայն Գանձակի վիճակի, Արէշի գաւառի Նեմերապատ գիւղի ծխ. դպրոցի հոգաբարձութեան խնդրի, որով յայտնում են այդ դպրոցի փակման վտանգի մասին, տալ նպաստ միմիայն այս տարի 150 ռ.։

—Յայտնել շնորհակալութիւն բարերար պ. Տիգրան Աֆրիկեանին Ախալքալաքի վիճակի Դզլքիլիսա գիւղի դպրոցի բացման նպաստի մասին։

Կ. Հ. Բ. Ը.-թիւնը շնորհակալութեամբ ստացել է.

Լողովայեա կայարանից պ. Կ. Մարտիրոսեանից 50 ռ. յօգուտ փախստականների։

—Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանից դպրոցական նպաստ 250 ռ.

—Գ. Արշակից յօգուտ գաղթականների 300 ռ.։

—Սերգէյ և Եկատերինէ Յարութիւնեաններից հանգ. օր. Մ. Մար. Մարտիրոսեանի դագաղի վրայ պսակ գնելու փոխարէն յօգուտ ճաշարանի 10 ռ.

—Չ. Աղամաշվիլուց յօգուտ Կաւթիսխեի դպրոցի 5 ռ.

—Գրողնու ճիւղից յօգուտ «մի հայ—մի ոսկի» ֆոնդի 2,500 ռ.։

—Թիֆլիսի առաջին մասնաւոր գրաւատան (լոմբարդի) ծառայողներից յօգուտ հիւանդանոցի 10 ռ. 14 կ.։

— Թիֆլիսի Արհեստաւորների Ակումբից (կլուբից) յօգուտ հիւանդանոցի 150 ռ.։

## ՃԻՒՂԵՐ

—Ղամարլուի նորաբաց ճիւղի վարչութեան անդամներ ընտրուել են՝ օր. Շ. Բարուսեան, պ. պ. Մ. Բաբախանեան, Ա. Օրդուեան, Գ. Այվազեան և Պ. Սիմէօնեան։

* * *

—Սեղրիի նորաբաց ճիւղի վարչութեան անդամներ ընտրուել են՝ նախագահ՝ Արշալոյս Տէր-Յովհաննեան, փոխ-նախագահ՝ Արշակ Վաղեան, քարտուղար-գանձապահ՝ օր. Աստղիկ Տէր-Զաքարեան։

* * *

Կ. Հ. Բ. Ը.-թեան Երևանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացել է տեղի ծխական դպրոցների օգտին պ. Յ. Շամիլեանի միջոցաւ.

Յ. Շամիլեան—10 ռ., Մ. Աղայեան—1 ռ., Մ. Ազիզեան, Մ. Տէր Պետրոսեան, Մ. Սարգսեան, Մ. Տէր Զաքարեան—մէկ մէկ ռ., Մ. Մելիք Օհանջանեան—5 ռ., Մ. Տէր Զաքարեան—1 ռ., Մ. Տէր Անանեան—3 ռ., Մ. Յարակուլեան—2 ռ., Դարբ. Աբրահամեան—3 ռ., Մարիամ Մուրադեան—2 ռ., Միք. Արադեան—2 ռ., Գաբ. Գաբրիէլեան—10 ռ., Ֆանր. Եղիազարեան—1 ռ., Դմիտրի Պոպով—3 ռ., բժշ. Արմ. Մելիքեան—10 ռ., Խորէն եպիս. Մուրադբէկեան—10 ռ., Աբր. Աբրահամեան—1 ռ., Գ. Աւդալեան—3 ռ., Աբր. Մելիքեան—1 ռ., Սիրակ. Տէր Մարտիրոսեան—1 ռ., Միք. Գրիգորեան, Անդ. Այդինեան, Անդր. Նազարեան, Աբր. Աֆրիկեան 50-ական կոպ., Աբր Սարգսեան—30 կ., Աբր. Խաչատրեան—50 կ., Իս. Տէր Իսահակեան—1 ռ., Գ. Էդիգարեան—50 կ., Աբր. Կայսարեան—30 կ., Աբր. Աբրամեան—20 կ., Թով. Բարայեան, Մնաց. Կարապետեան, Նիկ. Անանեան 50-ական կոպ. ընդամենը եօթանասունինը ռուբլի 30 կոպ. (79 ռ. 30 կ.)։

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Բագու—Հ. Տէր-Միքայէլեանից.

5 վագոն բրինձ արդէն ուղարկել եմ, մնացած 3-ը կուղարկեմ երկուշաբթի։ Վճարի համար պակասում է 10,000 ռուբ., խնդրում եմ փոխադրէք այդ գումարը։

Ծանօթութիւն. պահանջուած գումարը փոխադրուած է դեկտեմբերի 5-ին։

—

Բագու—Հ. Տէր-Միքայէլեանից.

Մնացած 3 վագոն բրինձը ուղարկեցի Թիֆլիս։

—

Եկատերինոդար—Մելքոնեանից.

Դանիլեսկին տուեց մեզ 4 վագոն առաջին տեսակի ալիւր և 30՝ թեփ-ալիւր։

—

Եկատերինոդար—Մելքոնեանից.

Թոյլ տուէք նորից 20 հազար պուդ եգիպտացորեն գնելու պուդը 1 ռուբ. 5 կոպ.։ Այս հեռագրին տրուած է դրական պատասխան և խնդրուած է հեռագրելու, թէ կարելի է արդեօք աւելի ստանալ և ինչ գնով։

## ՓԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Դեկտեմբերի 1-ից — 8-ը։

Ալիւր՝ ուղարկուած է Վաղարշապատ՝ 2 վագոն, Իգդիր՝ 4, բրինձ՝ Ղարաքիլիսա 1 վագոն։ Գարի՝ Իգդիր 2 վագոն և Սարիղամիշ՝ 1։

# Քրոնիկոն

Նոյեմբերի 25-ին, Երաժշտական դպրոցի դահլիճում, Հայ Գրող. Ընկ. երեկոյթին, բանաստեղծ Յ. Թումանեան մի զեկուցում տուեց Հայոց գրական լեզուի արդի վիճակի մասին։ Զեկուցումը շատ հետաքրքրական էր և շօշափում էր լուրջ խնդիր։ Տեղի ունեցաւ վիճաբանութիւն, բայց վիճաբանողների թիւը շատ լինելու պատճառով շարունակութիւնը յետաձգուեց յաջորդ գրական երեկոյթին։ Յաջորդ գրական երեկոն տեղի ունեցաւ դեկտեմբերի 2-ին, երբ դարձեալ ծեծուեց խնդիրը. եզրակացութիւնն այն եղաւ, որ պէտք է ներկայ գրական լեզուն աւելի և աւելի ճոխացնել՝ մի կողմից ժողովրդական—բնաշխարհիկ լեզուով, միւս կողմից հին-դասական ոսկեղինիկ լեզուի անգնահատելի գոհարներով։

* * *

Գրական-Գեղարուեստական Սալոնի դեկտեմբերի 9-ի երեկոյթը նուիրուեցաւ հանգուցեալ գրականագէտներ Ս. Թառայեանին և Ա. Եզեկեանին։

* * *

Հ. Կ. Կոմիտէի Նախագահ պ. Ս. Յարութիւնեան կարևոր գործերով մեկնեցաւ Դիլիջան։

* * *

Ռոձեանկօ-Մարկովի միջնադէպի առթիւ Թիֆլիսի քաղաքային խորհրդարանի հեռագրին, որով նա Պետական Դումայի Նախագահ Ռոձեանկոյին իւր կարեկցութիւնն էր յայտնում Մարկով Բ.-ի նորան հասցրած վիրաւորանքի համար, Ռուձեանկոյից ստացուել է հետևեալ պատասխանը. «Խնդրում եմ հաղորդել Թիֆլիսի քաղային խորհրդարանին անկեղծ շնորհակալիք իւր արտայայտած զգացմանց համար»։

* * *

ՇՈՒԿԱՅ. Բերուած են շատ որսած թռչուններ. գները բարձր են. սագեր 2 ռ. 50 կ.—4 ռ. հատը, հնդկահաւեր 4 ռ.—8 ռ., սագի փորոտիքը 80 կոպ., հաւեր 2 ռ. 50 կ.—3 ռ., բադեր 2 ռ. 40 կ.—2 ռ. 50 կ., փասեաններ զոյգը 8 ռ., սարեկներ զոյգը 50, խոչկորներ հատը 6—7 ռ., խեցգետիններ կենդանի տասնեակը 30—40 կ., ղոչ ֆունտը 2—2 ռ. 50 կ., Սևանայ կարմրախայտ 90 կ.—1 ռ. 20 կ., Խրամի ձուկ 1 ռ., պանիր Բութայիսի 80 կ., Բաթումի լիմոններ հատը 15—40 կ., կարտոֆիլ պուդը 2 ռ.։

* * *

Պետական Խորհրդի մանկաժողովի նիստում Զվերովի նախագահութեամբ վերջնականապէս ընդունուած է օրէնագիծ Թիֆլիսի բազմարուեստեան դպրոցի (պոլիտեխնիկում)։

* * *

† Վ ա ր դ ա ն Ե ղ ի ա զ ա ր ե ա ն.—Նոյեմբերի վերջին Թիֆլիսում կնքեց իւր մահկանացուն այս երդուեալ հաւատարմարը։ Հանգուցեալը Երևանցի էր և այստեղ էլ երկար տարիներ գործել է թէ իբրև Ս. Էջմիածնի Սինոդի հաւատարմատար և թէ թեմական դպրանոցի հոգաբարձու։ Ապա փոխուեց Թիֆլիս և եղաւ Ներսիսեան դպրոցում ռուսերէնի ուսուցիչ։ Եղիազարեանը բնաւորութեամբ քաղցրահամբոյր և համեստ էր, ապրում էր հայ կեանքով. լուրջ էր իւր հասարակական գործունէութեան մէջ, որ այնքան արդիւնալից է եղել մանաւանդ Երևանում։ Այսպիսի տիպեր շատ չեն հայ կեանքում, որ անաղմուկ և լռումունջ գործում են։ Նա մեծ յարգանք էր վայելում ոչ միայն իւր ծանօթների և բարեկամների շրջանում, այլև հասարակութեան ընդարձակ խաւերում, մանաւանդ Երևանայ նահանգում։

# Արտաքին տեսութիւն

## ՎՃՌԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹԻՒՆԸ

Մենք կանգնած ենք համաշխարհային դրամայի ամենամեծ ու ամենավճռական իրադարձութեան առաջ։

Ողբերգական, ոչ, ճակատագրական անհեթեթութիւն է, բայց ճիշտ է, որ պատերազմի առաջին ամսից մինչև այսօր կրկնում են. մենք չգիտէինք, թէ թշնամին այնքան ուժեղ է, որ պատերազմը այնքան երկար կտևի։

Աւելին. այսօր արդէն խոստովանում են,—այդ են ասում փաստերը, նախարարական ճգնաժամերը,—որ մենք չգիտէինք նաև՝ թէ ո ւ մ հ ե տ, ո ւ մ դ է մ և ինչպէս ենք կռուելիս եղել։

Հետևանքը՝ մի շարք ճակատագրական վրիպումներ, յապաղումներ ու թերացումներ, որ առանձնապէս ողբերգական են եղել փոքր ազգերի համար։ Միջագետք, Դարդանել, Սալոնիկ, Վարշաւա... ահա այդ վրիպումների ու սխալանքների անունները, ահա կանոնը մի գեղեցիկ, մի եղակի, մի սքանչելի բացառութեամբ—հերոսական, ոչ, դիւցազնական Ֆրանսիան իր Վերդէններով։

Պատմութիւնը, ճիշտ է, մեզ սխալեցնում է։ Բայց պատմութիւնը նաև դասեր է տալիս, նաև սովորեցնում է։ Ճիշտ է, որ «գործողը սխալւում է», ճիշտ է նաև, սակայն, որ կրկնուող իրողութիւններից ու սխալանքներից լուրջ գործողը չի կրկնում սխալմունքը։

Դժուար էր գուշակել շատ բան։ Բայց պէտք էր և կարելի էր տեսնել, հասկանալ շատ բան, զգաստանալ օր առաջ և նորանոր սխալներ չգործել։ Պատմութիւնը դրա համար բաւական խիստ ուսուցիչ եղաւ. նա երկար պատժեց։ Արդարացում չկայ անվերջ կրկնուող ու նորանոր փաստերով իր պահանջը պնդող պատմութեան դատաստանի առաջ։

Բայց կարծես սթափւում, զգաստանում են։ Եւ հարուածները շատ էին ուժգին, սխալանքները շատ էին ճակատագրական, որ այժմ էլ չսթափուէին։ Տախւրմեր... Բուխարեստ և Յունաստան... Գերմանիան տէր Միջին Եւրոպային և Բալկաններին, Գերմանիան ուժեղ ու յաղթական... հաւասար պայմաններում ու վտանգաւոր։

Վտանգը շատ է ահաւոր, հեռանկարը սարսափելի, որ այսուհետև էլ հպարտ Ալբիոնը մնայ իր «փայլուն մեկուսացման» մէջ։ Կարող էր ուշ, շատ ուշ լինել։ Եւ ահա նա ցնցուեց. անօրինակ պայմաններում մի արտասովոր նախարարական դահլիճ կազմեց Լ. Ջորջի համարեա թէ դիկտատորական ղեկավարութեամբ—արագ և վ ճ ռ ա կ ա ն գործելու համար։

Համարեա նոյնը և Ֆրանսիայում։ Ըստ վերջին հեռագրի Բրիանը իրաւունք է ստացել մի նոր, սակաւաթիւ, գործօն նախարարութիւն կազմելու, «որպէսզի հնարաւոր լինի պատերազմին վերաբերեալ որոշումներն շատ ա ր ա գ կայացնել»։

Ռուսաստանի դրութիւնը մեզ համար շատ է պարզ...

Որքան հզօրանում և վտանգաւոր է դառնում Գերմանիան՝ նոյնքան վճռական ու գործօն են դառնում դաշնակիցները։ Թէև, աւա՜ղ, բաւականին ուշ... բայց անկասկած է, որ աշխարհասասան դրամայի ամենաողբերգական գործողութիւնն է սկսւում։

Հիմա է, որ ուժերը ո ր ո շ ւ ո ւ մ և չ ա փ ւ ո ւ մ են իրենց ամբողջ էութեամբ, խկութեամբ և մեծութեամբ։

Պատրաստուենք այդ ցնցող, աղէտալի տեսարանների համար...

Վ. Խ.

## ՀԱՇՏՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԱՐԿ

Վերջին շաբաթուայ ընթացքում քաղաքական ամենախոշոր դէպքը, որ յիշատակելի պիտի մնայ պատերազմի տարեգրութեան մէջ, այդ թշնամիների կողմից եղած հաշտութեան առաջարկն է, Ռումինիայում իրենց ունեցած խոշոր յաջողութիւններից յետոյ Գերմանիան, իւր դաշնակիցների հետ ցանկութիւն են յայտնում հաշտութեան բանակցութիւններ սկսել և դիմել են չէզոք պետութեանց և պապի միջնորդութեան։

Քառեակ Զինակցութեան ներկայացրած հաշտութեան պայմանների բնագրի մէջ, նրանք երեւան են հանում ներկայ պատերազմի գործած սոսկալի նախճիրը, որ աւերածութեան է մատնում քաղաքակիրթ աշխարհի մեծ մասը։ Վերգծելով պատերազմի գործած նիւթական ու բարոյական չարիքները, նրանք չեն մոռանում յիշատակել նաև այն յաղթութիւնները, յայտնելով միաժամանակ, որ հաշտութեան մերժման դէպքում պատրաստ են մինչև վերջին շունչը շարունակելու պատերազմը։

Թշնամու կողմից պաշտօնական կերպով հրապարակ նետուած խաղաղութեան ծրագիրը բղխում է այն մի շարք պատերազմական և քաղաքական պատճառներից, որոնց մէջ ապրում են այսօր պատերազմող պետութիւնները։ Բալկանեան ճակատում թշնամու տարած փառաւոր յաղթութիւնը, Յունաստանի երկդիմի և կեղծաւոր ընթացքը և Ռուսաստանի ներքին տնտեսական ճգնաժամը, յարմար և նպաստաւոր հող են ծառայում հաշտութիւն կնքելու ի նպաստ տևտոն ժողովուրդին։

Հաշտութեան դիմելու ամենից զօրաւոր պատճառներից մէկն էլ պէտք է համարել Գերմանիոյ և զինակիցների ներքին հասարակական կեանքը, կենսամթերքների ճգնաժամը, աշխատող ոյժերից երկիրը բացարձակապէս ամայացած լինելը։

Ահա թէ ինչու Վիլհէլմը դիւանագիտական ճարպիկութեամբ հաշտութեան ձեռք է մեկնում, մէկ կողմից պատերազմական նըպաստաւոր վիճակը հաշուի առնելով, միւս կողմից հասարակական խռովայոյզ կարծիքը հանգստացնելու մտադրութեամբ։

Կայ նաև դաշնակիցներին պառակտելու հանգամանքը։

Հաշտութեան առաջարկի դէմ ամենից զօրաւոր կերպով արտայայտուեց Ֆրանսիան՝ իր նախարարապետի՝ Բրիանի բերանով, որ հետևեալ բնորոշ խօսքերն է ուղղում պատգամաւորներին. «Պաշտօնապէս յայտնում եմ ձեզ, ոչ միայն դաշնակիցների որոշ ու համաձայնեցուած տեսակէտն այդ հարցի մասին, այլև պարտք եմ համարում նախազգուշացնել երկիրը հնարաւոր մոլորումից։ Երբ մի երկիր զինուում է ոտից մինչև գլուխ, երբ նա զէնքի տակ է կանչում ամբողջ ազգաբնակչութիւնը, քայքայելով առևտուրն ու քանդելով օջախները, երբ նրա հնոցները ծայրայեղ չափով տաքացուած են՝ աւելացնելով անդադար ռազմամթերքի արտադրութիւնը, երբ թշնամին, ոտնահարելով միջազգային իրաւունքի բոլոր կապերը, իր գրաւած վայրերում ժողովուրդը հաւաքում է պարտադիր աշխատանքների համար—այդպիսի րոպէում ոճրագործ պիտի համարէի ինձ, եթէ չ'ազդարարէի իմ հայրենիքին՝ «զգուշացիր և արթուն կաց»։

«Մեզ առաջարկում են հաշտութեան պայմաններ քննել այն րոպէին, երբ թշնամու ձեռքին են Բելգիան, Սերբիան և Ֆրանսիայի տաս գաւառամասեր»։ Ապա ի վերջոյ աւելացնում է. «Մենք իրաւունք ունենք ասելու, որ այդ մի փորձ է բաժանելու դաշնակիցներին, պղտորելու մտքերը, բարոյալքելու դաշնակից ժողովուրդները։ Նման հանգամանքներում Ֆրանսիական հանրապետութիւնը չէ կարող բանակցութիւններ վարել»։

Ռուսաստանն ևս միացաւ իւր դաշնակցի օրինակին և յայտարարեց, որ պատերազմը շարունակելու է մինչև վերջ։ Այդ առթիւ արտայայտուեցին նաև դաշնակից միւս պետութիւնները։

Արտաւազդ

# Գեղարուեստ

## ՀՈԳԵՒԱՐՔԻ ՍԱՐՍՈՒՌՆԵՐ

## ԱՇՈՒՆ

*Կեանքիս ծաղիկներ կը խամրին մէկ մէկ,*
*Թօշնած ու դժգոյն...*
*Ու մահուան հողմէն կը ցրուին անհետ*
*Երազի մ'հանգոյն...*

*Ծեր բուի մը պէս սիրտս հէք կուլայ*
*Գարունիս անցած,*
*Սև ձիւն կը թափէ ա՜խ սիրտիս վրայ*
*Աւերակ լքուա՜ծ...*

*Հոգիս կը մարի լոյսի մը նման*
*Սարսուռով նըւաղ...*
*Խաւարը կը հիւսէ մահուան սև պատան*
*Իմ կեանքիս, աւա՜ղ...*

S. Phinx

* * *

*Ես օրն ի բուն*
*Գիշերն անքուն*
*Քեզ կարօտով կ'երազեմ,*
*Կեանքիդ համար*
*Միշտ սիրավառ*
*Ծունկի եկած կ'աղօթեմ։*
*Վառ յոյսերով,*
*Բուռն յոյզերով*
*Հանդիպումիդ կըսպասեմ,*
*Անհուն տենչով.*
*Լոյս երգերով*
*Քեզ կարօտով կը կանչեմ։*
*Ե՜կ, սիրիր ինձ,*
*Հեռու երկրից,*
*Ի՜մ լոյս երազ, կեա՜նք վսեմ...*

Թիֆլիս — Անահիտ

# Գրականութիւն

## ԽԱՒԱՐԻՆ ՄԷՋ*)

II

—Դեռ քաղքին մէջ մարդ կայ... ըսաւ ինքնիրեն Նազենիկը ու վեր կեցաւ ունկնդրելու դուրսէն լսուող անորոշ ձայները։

Այդ ձայները, որոնք գիշերապահներու հեռաւոր սուլոցներուն կամ անօթութիւնէն ղալարուող շուներու ոռնոցներուն կը

*) Տես «Համբաւաբեր» № 49։

ցաւ խրճիթի անկիւնէն. սարսափի ազդեցութեան տակ քարացած ծերունի անդամալոյծը զարմանալի և աստուածային զօրութիւն մը ստացաւ յանկարծ, ձգուեցաւ առաջ գորտի նման և պատի անկիւնէն վերցնելով փայտի հաստ կոճղը, զօրաւոր ոյժով մը ձգեց դէպի անծանօթ հսկան, որ գոռգռաց, ահռելի ճիչ մ'արձակեց և երեսն ի վար թաւալեցաւ թաղիքին վրայ։

Մինչ անդամալոյծը ոյժի այդ ծայրայեղ լարումէն ուժաթափուած անշարժ մնաց իր լաթերուն մէջ...։

Նոյն վարկեանին ճրագի պատրոյգէն արիւնոտ լոյսը՝ հոգեվարքի վերջին տողերն մրմնջաց, մեռելի մը դէմքին պէս դեղնցաւ և հանգաւ, թողնելով խրճիթի ողբերգութիւնը խաւարի թանձր քղանցքին ներքև...։

Ծ. Թորգոմեան

(Վ ե ր ջ)

---

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

Հայոց Դրամատիկ ընկերութեան խմբի 11-երրորդ հերթական ներկայացումը կը կայանայ վաղը, երկուշաբթի, դեկտեմբերի 12-ին, Արտիստիկ Թատրոնում։ Առաջին անգամ լինելով խաղալու են Լ. Շանթի Նոր Թատերկ «Կ ա յ ս ր»-ը։ Կայսրուհի Թէոֆանոյի դերը կանձնաւորէ տիկ. Սիրանոյշը, Կայսր Նիկեֆորինը՝ Յ. Սևումեանը։ Օհան Գուրգէնինը՝ Վ. Փափազեանը։ Հաննայի դերը կստանձնէ տիկ. Լ. Սևումեանը։ Վասիլ Լեկապէնի՝ Միրզոյեանը։ Մեծ Լոկոթէտինը՝ Բերոյեանը։ Հոգևորականինը՝ Գ. Աւետեանը։ Բոլորովին նոր հագուստներ և նոր բեմապատկերներ՝ նկարիչ Ֆէթվաճեանի ստուերանկարի համաձայն։

---

### Յ. ՊԱՐՈՆԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Դեկտեմբերի 8-ին Արտիստիկ Թատրոնում Հայ Դրամատիկ «Գուրգէն» խումբը ի յիշատակ Տաճկահայ յայտնի երգիծաբան Յ. Պարոնեանի ներկայացրեց «Բաղդասար Աղբարն» և «Մեծապատիւ Մուրացկանները»։

Ներկայացումից առաջ դերասան պ. Վրոյրը մի քանի խօսքով նկարագրեց Պարոնեանի կենսագրութիւնն ու նրա արժէքը հայ գրականութեան մէջ։

Ապա «Բաղդասար Աղբար» ներկայացուեց։ Բաղդասար Աղբօր դերը տանում էր պ. Աբէլեանը։

Գ. պ. Ալիխանեան և Կաւուշը կարդացին մի քանի երգիծական կտորներ։

Այնուհետև «Մեծապատիւ Մուրացկաններից» մի հատուած ներկայացուեց, որի մէջ Աբիսողոմ աղայի դերը կատարում էր պ. Վրոյրը։

---

## ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ

### ՊԵՏԱԿԱՆ ԱՊԱԳԱՅ ՄԻՋՆԱԿԱՐԳ ԴՊՐՈՑԸ ԱՌԱՆՑ ՏԵՂԱԿԱՆ ԼԵԶՈՒՆԵՐԻ

Պետական և հասարակական կեանքի ցնցումների ժամանակ և յետոյ այնպիսի հարցեր են հանդէս գալիս ուժեղ թափով, որի մասին երազել անգամ անկարելի է խաղաղ և բնականոն (նորմալ) ժամանակները։

Ներկայ համաշխարհային պատերազմը հասարակական արժէք ունեցող հարցերի յարութեան լաւագոյն պայմաններից մէկն է։ Շատ հարցերի ծայրը հենց այժմեանից է բացուել, զարգանալու համար նպաստաւոր պայմանների պահանջներ են անում այդ հարցերը. շատ հարցեր էլ յետոյ կը ծնեն և նոյնպիսի պահանջներ կանեն։

Պետական միջնակարգ դպրոցի պակասաւոր կողմերը վաղուց էին նկատուել և քննադատութեան ենթարկուել. բայց ոչ մի անգամ այդ դպրոցի անկեալ վիճակն այնքան զգալի չէր դարձած, ինչպէս այժմ։ Այս պատերազմը բաց արեց աւելի քան ցայտուն կերպով մեր պետական-հասարակական կեանքի շատ խոցեր. այդ խորը բացուած վէրքերից մէկն էլ դպրոցական խնդիրն է։

Այժմեան լուսաւորութեան նախարար Իգնատևը լուրջ կերպով զբաղուած է ահա մի տարուց աւելի պետական միջնակարգ դպրոցի բարեփոխութեան խնդրով։ Այդ ուղղութեամբ մի քանի յանձնաժողովներ արդէն աշխատանքներ են կատարել։ Նախարարութեան նախագիծը յայտնի է հասարակութեան. այդ նախագիծը Պետական Դումայի քննութեանն ու հաւանութեանն է ներկայացուելու։

Այդ նախագիծը պետութեան ոչ-ռուս ժողովուրդների շահերի համար մի մեծ վտանգ է պարունակում, այդ պատճառով էլ այդ ժողովուրդներն աւելի լրջօրէն պէտք է մտնեն խնդրին և միջոցներ ձեռնարկեն գալիք չարիքի առաջն առնելու համար։

Այդ նոր նախագծի համաձայն ստեղծւում է մի տեսակ պետական միջնակարգ դպրոց, որի ստորին դասարանների ծրագիրը ընդհանուր է. միջնակարգ դպրոցի ստորին դասարանների բոլոր երեխաները միատեսակ կրթութիւն են ստանում։ Այնուհետև միջին դասարաններից ստեղծւում են երեք տարբեր տիպի բաժանմունքներ—տարբեր դասարաններ, որոնցից ամեն մէկում գերակշռում են որոշ տեսակի առարկաներ. այդ մասերն են՝ հումանիտար, ռէալական և ռէալ-հումանիտար։ Այս կերպ աշակերտները հենց միջնակարգ դպրոցի միջին և բարձր դասարաններում ընդհանուր կրթութեան հետ ստանում են նաև որոշ չափով մասնագիտական կրթութիւն։ Աշակերտները շարունակում են ուսումն իրենց ընդունակութեանը համապատասխան դասարանում։

Այս ծրագրի առանձնայատկութիւններից մէկն էլ այն է, որ ռուսական առարկաները առանձնապէս շեշտուած են. ստեղծւում է այսպէս ասած «ռուս պետական» դպրոց։

Այս ծրագիրը ունի մի մեծ առաւելութիւն. դպրոցի մէջ մտնում է բազմազանութիւն. դասարանները միատեսակ չեն։ Այդպէս էլ պէտք է լինի. երեխաների հետաքրքրութիւնը բազմազան պատկեր է ներկայացնում. հենց փոքրուց պէտք է զարգացնել երեխաների մէջ ծագած մասնագիտական հետաքրքրութիւնը։ Այս նոր ծրագիրը բազմակերպութեան սկզբունքի վրայ հիմնուած լինելով՝ գոհացում է տալիս մանկան հոգեկան պահանջներին և մանկավարժական հիմնական սկզբունքներին։

Այս չափով միայն յառաջդիմութիւն է նկատւում նոր ծրագրում։ Մի այլ կողմից այդ միակողմանի է և նոյն իսկ վնասակար։

Նոր ծրագիրը հիմնուած է հոգու բազմազան հետաքրքրութեան պահանջի վրայ. այդ շատ լաւ. բայց չէ՞ որ բազմազանութիւնը նախարարական նախագիծը միակողմանի է ըմբռնում. ոչ միայն բազմազան կարիքներ ունին նոյն ազգի նոյն տարիքի երեխաները, այլ իրենց հոգու կարիքներով իւրատեսակ կերպով տարբերւում են զանազան ազգերի պատկանող նոյն տարիքի երեխաները։ Հայ, վրացի և թուրք երեխաները հոգեկան այն հետաքրքրութեամբ, մտապաշարով, զգացումով չեն գալիս դպրոց, ինչպէս ռուս երեխաները։ Հայ, վրացի և թուրք երեխաները պատրաստւում են ապագայում ոչ միայն ընդհանուր պետական կեանքի, այլ և իրենց, նեղ մտքով. հայրենիքի, ծննդավայրի, իրենց ժողովրդի հետ աշխատելու համար։ Ամեն մի անհատ պետութեան

անդամ լինելով հանդերձ՝ մի որոշ ազգութեան անդամ էլ է. դէպի այդ ժողովուրդը նա պարտականութիւններ ունի։

Ի՞նչ է ասում այս մասին նոր նախագիծը—ոչինչ. աւելի ճիշտ՝ շատ բան։ Նա ասում է, որ ռուսական պետութեան մէջ չկան հայեր, վրացիներ, թուրքեր, լեհեր և այլն. այլ կան միայն ռուսներ կամ ռուսանալու համար նիւթ ծառայող ազգութիւններ։ Այդ պարզ չի ասուած, բայց բղխում է ամբողջ ոգուց և մանաւանդ ծրագրի մայրենի լեզուի բացակայութիւնից։

Ոչ մի տեղ այդ նոր նախագծի մէջ չի յիշած, որ պարտադիր առարկաների մէջ մայրենի լեզու ասած առարկան էլ կայ. ոչ միայն այդ, այլ նոյն իսկ ազատ, կամովին առարկաների մէջ անգամ տեղ չի տուած մայրենի լեզուին։

Այս արդէն շատ ու շատ ցաւալի է. մի՞թէ մեր կեանքը մի քայլ առաջ է գնում երեք քայլ յետ գալու համար։

Ներկայ պատերազմը նաև փոքր ազգերի վարդագոյն ապագայի անունով է սկսուել. այդ ուղղութեամբ ընդհանուր պետական յայտարարութիւններ են եղել. և այդ բոլորից յետոյ գործնական առաջին քայլում լիակատար արհամարհանք դէպի այդ հիմնական սկզբունքը. նշանակում է ետ ու առաջ գնալ առանց հիմնական սկզբունքների։

Պետական միջնակարգ դպրոցը «ռուսական» պէտք է լինի ռուսների համար, «հայկական»՝ հայերի համար, «վրացական»՝ վրացիների համար և այլն. այդ բոլոր տիպի դպրոցների ընդհանուր յատկանիշն է լինելու «պետականը», բայց նրա բովանդակութեան մէջ պետականի կողքին պէտք է տեղ բռնի մայրենին և ազգայինը։

Պետական միջնակարգ դպրոցի ստորին դասարաններում գերակշռող է լինելու մայրենի լեզուն, առարկաների մեծ մասը պէտք է մայրենի լեզուով դասաւանդուին. միջին դասարաններում կարող են մայրենի և պետական լեզուների նշանակութիւնը հաւասարուել, իսկ վերին դասարաններում—որպէսզի պետական լեզուն լաւ սովորեն—կարող է պետական լեզուին աւելի գերակշիռ տեղ տրուել։

Ահա այս կերպ ստեղծուած պետական միջնակարգ դպրոցը կարող է բաւարարութիւն տալ պետութեան մէջ ապրող բոլոր ազգերին։ Այս կերպ միայն լիակատար բաւարարութիւն կստանայ մանկավարժական-հոգեբանական այն սկզբունքը, թէ մանուկի ժառանգական յատկութիւնները, ազգային, հասարակական շրջապատը, ծննդավայրն ու մայրենի լեզուն պէտք է մանկավարժական ձեռնարկութեանց հիմքը լինին։ Այլ կերպ միշտ էլ անկատար, թերի և անձև կլինի ամեն մի ձեռնարկութիւն։

Այս է իդէականը, ցանկալին. սրա վրայ է յենուելու պետականութիւնը, և այս նոր նախագծի մէջ ոչ միայն այս ուղղութեամբ ոչինչ չենք գտնում, այլ նոյն իսկ այժմեան, վատ ճանաչուած միջնակարգ դպրոցում գոյութիւն ունեցող «կամաւոր» մայրենի լեզուն անգամ դուրս է քցուած, ինչպէս տեսանք։ Այս արդէն աղաղակող մի անհոգութիւն կամ արհամարհանք է, որի առաջը պէտք է առնել ժամանակին։ Եթէ այս նոր ծրագիրը նոյնութեամբ անցնէ Պետական Դումայում, նշանակում է եղած անտանելի վիճակը աւելի ևս վատթարանալու է։

Յոյսի և ակնկալութիւնների այս շրջանում հիասթափութեան փաստերը քանի գնում այնքան շատանում են։

Գ. Էդիլեան

---

# Գիտութիւն

## ՍԿԱՐԼԱՏԻՆԱ *)

Սկարլատինան—քութէշը չի դադարում Թիֆլիսում, սկսած անցեալ տարուանից, երբ քաղաքագլուխը և բժշկա-սանիտարական վերահսկիչը դիմել էին մի կոչով ազգաբնակութեանը զանազան հրահանգներով։

Այդ հիւանդութիւնը տիրում է և այժմ հասնելով մեծ չափի, համեմատած միւս տարափոխիկ հիւանդութիւնների հետ. ուստի հարկաւոր է հանրամատչելի ծանօթութիւն տալ այդ հիւանդութեան մասին «Համբաւաբեր»-ի ընթերցողներին, ինչպէս արել ենք նոյնը տիֆերի մասին նոյն հանդէսում։

Եթէ կայ մի հիւանդութիւն, որը համարւում է ամենավտանգաւորը երեխաների համար, մանաւանդ ադէտ հասարակութեան և մեր խաւար գիւղի ազգաբնակութեան մէջ, այդ յիշեալ հիւանդութիւնն է։

Սկարլատինան ունի չորս շրջան.

ա. Թխման շրջան (инкубац. періодъ), որը տևում է սկարլատինի թոյնի մեր կազմուածքի մէջ մտնելուց մինչև նախնական նշանների երևալը։ Սովորաբար այդ տևում է միջին թուով՝ 4—7 օր, երբ հիւանդութեան նշան չի երևում։

բ. Կանխանիշ շրջանը (Продромальный періодъ), տևում է 2 ժամից մինչև երկու օր և արտայայտւում է սաստիկ դողով, տաքութեամբ մինչև 41,5° Ց. և աւելի, գլխացաւով, ընդհանուր կոտրատումով, զառանցանքներով, ջղաձգումներով, քթի արեան հոսումով, փսխումով. կուլ տալիս ցաւ, նշագեղձերի և ստորգի կարմրութիւն և ուռչում։

Մինչև մարմնի վրայ դուրս տալը փափուկ քիմքի վրայ երևում է մանրակէտ կարմրութիւն (мелкоточечная краснота)։ Գլխաւոր ախտանշանը՝ ըստ մեծի մասին՝ լինում է ստորդացաւ (жаба, ангина) իրան յատուկ նշաններով, այն է՝ ցաւ կուլ տալիս, ստորգի կարմրութիւն, նշագեղձերի ուռուց. ստործնոտեայ գեղձերի ուռչում և շօշափելիս ցաւ. հազ չի լինում, որ սովորական է կարմրուկի ժամանակ։ Հիւանդի լեզուն բոլորովին կարմրագոյն է լինում. հիւանդը սաստիկ ծարաւ է զգում, բայց ախորժակ չի ունենում։

գ. Դուրս տալու և ծաղկման շրջան (періодъ высыпанія и цвѣтенія)։ Ցանը (сыпь) երևում է շատ շուտ, վզի, կրծքի վերի մասերի և մէջքի վրայ մանր կէտերի նման կարմրագոյն և աղօտ-վարդագոյն ֆոնի վրայ, տալով մորթին մարմարի ձև, և այդ կատարւում է 12—24 ժամուայ ընթացքում ամբողջ մարմնի վրայ, թողնելով ազատ միայն քիթը, շրթունքները և ծնօտը, որոնք իրանց աղօտութեամբ կազմում են հակադրութիւն պայծառ այտերի հետ։ Իսկ ծաղիկը և կարմրուկը այդ պատկերը չեն տալիս։ Ցանը սովորաբար տևում է 3—5 օր. երբեմն ցանի հետ լինում են մանր փամփուշտիկներ (miliaria), որոնց անգոյն հեղուկը պղտորւում է։

Որքան թանձր է ցանը, այնքան ծանր պիտի համարել հիւանդութեան ձևը, ինչպէս գրում է հռչակաւոր ֆրանսացի պրոֆ. Տրուսոն։

Գալով ստորդացաւին (angina), որը միշտ զուգորդւում է սկարլատինային, նա ցանի ժամանակ աւելի ևս սաստկանում է, պատճառելով սաստիկ ցաւեր կուլ տալիս և բերանը բանալիս։ Ամբողջ ստորգը (зѣвъ) սաստիկ կարմրում է, ուռչում նշագեղձերի, փափուկ քիմքի, լեզուակի հետ։ Նշագեղձերի վրայ երևում է մոխրագոյն փառ դիֆտերիտի նմանութիւն ունեցող, որը կարող է տարակուսանքի առիթ դառնալ։

*) Այդ տերմինը ծագում է պարսկական Sakirlat—կարմիր գոյն խօսքից. ընդունուած է բոլոր լեզուներում. Ռուսահայերս ասում ենք քութէշ իսկ տաճկահայերը՝ չռռատենգ.

ննելով փիլիսոփայութիւնը, կազմում էին հանրակրթական դասընթաց (курсъ), որ սովորաբար վերջանում էր աստուածաբանութեան ուսումնասիրութեամբ։ Վերջինս միայն կղերի արտօնութիւնը չէր. աշխարհական ընտանիքի զաւակներն էլ ուսանում էին աստուածաբանութիւն։ Ահա այսպիսի դպրոց անցաւ նաև Փոտը, որ տարրական ուսում ստանալով իւր ուսուցիչներից, ինքնակրթութեամբ լրացրեց իր ուսումնատենչ ծարաւը։ Բնութիւնից օժտուած հարուստ ձիրքերով, անքուն գիշերներ դեգերելով գրքերի վրայ, նա կարողացաւ ամբարել այնպիսի ահագին պաշար գիտութեան ամենայն ճիւղերում, որ իրան հաւասարը չունէր իւր ժամանակ։ 858 թ. երբ Միքայէլ հայկազն *) կայսեր օրերում Իգնատիոս պատրիարքին տապալեցին գահից, նորա տեղ ընտրուեց աշխարհական Փոտը, որին վեց օրուայ ընթացքում ընձեռելով բոլոր հոգևորական աստիճանները, (դեկ. 25-ին 858) եպիսկոպոս ձեռնադրեցին և բազմեցրին պատրիարքական գահի վրայ։ Լաւագոյն ընտրութիւն չէր կարելի անել բիւզանդական կայսրութեան համար այս միջոցին։ Բանն այն է, որ Փոտի ժամանակակից պապն էր Հռովմում Նիկողայոս I-ը, որ երկաթի կամքի տէր լինելով, ձգտում էր իւր իրաւասութեան ենթարկել քրիստոնէական համայն աշխարհը։ Նա Պետրոսի գահը գրաւեց ապրիլի 24-ին 858 թ.։ Հեղինակը լաւ բնորոշում է սորա բնաւորութիւնը, մտաւոր և հոգեկան յատկութիւնները և համարում է հռչակաւոր պապերից մէկը, որ այնքան բարձր պահեց և զարգացրեց պապական իշխանութեան վարկը Եւրոպայում և այլուր։ Յանձին Նիկողայոսի պապական գաղափարը հզօր ջատագով գտաւ, որ նա շատ նպաստեց տեսական և գործնական հաստատութեանը, վիճելի ձգտումները և խախուտ իրաւական դրութիւնները նա կարողացաւ անվիճելի և հաստատուն իրաւունք դարձնել և գերազանցել քահանայապետական իշխանութեան առաւելութիւնը կայսերականից։ Շնորհիւ իւր խելքի, բարեպաշտութեան և անյողդողդ բնաւորութեան յաջողում էր յառաջ տանել իւր քաղաքականութիւնը, մաքառելով կայսրների և թագաւորների դէմ։ Նա չէր կամենում ճանաչել ոչ մի ազգային, ուրոյն եկեղեցի, բոլորը պիտի ընդունէին Հռովմի գերիշխանութիւնը։

Ահա այս առթիւ ընդհարուեցան Արևմուտքը Արևելքի հետ, այն է՝ Հռովմայ Նիկողայոս պապը և Կ. Պոլսի Փոտ պատրիարքը IX դարում։ Այդ պայքարի հետևանքը յայտնի է, արևմտեան և արևելեան եկեղեցիները ընդ միշտ բաժանուեցան իրարից, որով ցոյց տուին, որ քրիստոնէական խաղաղարար ոգուց հեռու են և երկուսն էլ տոգորուած են մինը միւսին կլանելու ախորժակով։ Յիշեալ պատմական անցքերը կատարւում էին մեր IX-դ նախնեաց առջև և նոքա շատ լաւ հասկանում էին երկու կողմերի քաղաքանութեան նպատակները և պիտի աչալուրջ լինէին. հանգամանքներն էլ այսպէս էին թելադրում նոցա։ Եւ երբ Փոտ պատրիարքը եկեղեցիների միութիւն առաջարկեց Հայերին, նոքա իսկոյն ճանաչեցին ոչխարի մորթին հագած գայլին և զգուշացան, որով և փրկեցին Հայոց եկեղեցու գոյութիւնը։

Գրքիս հեղինակի համակրութիւնը Փոտի կողմն է այս խնդրում. յամենայն դէպս աւելորդ չէ մեր հասարակութեան կարդալ նորա երկը և յարգել իւր հարազատ եկեղեցին, վասն զի կրօնը և հաւատը լաւագոյն տարրերն են մեր կեանքի, որին մենք անչափ կարօտ ենք մնացել միշտ։

Մ. Շավրեան

*) Յայտնի բան է, յունադաւան էր և ուրեմն հայատեաց։ Նորան սպանեց նորա իսկ աթոռակից՝ հայ բարեկամ Վասիլը (Բարսեղ), որ աղքատ հայ ընտանիքի զաւակ էր, Մակեդոնիայից։ Վասիլը եղաւ հիմնադիր մակեդոնական կամ Հայկական, հարստութեան (династію)։ Մ. Շ.

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

### ԿՈՉ

Երևանի թեմի գաղթականական դպրոցների կենտրոնական հոգաբարձութիւնը՝ Երևանի, Սուրմալուի, Ղամառլուի, Ղրխ-Բուլաղի, Դարաչիչագի և Նոր-Բայազիդի շրջաններում իր խնամքին յանձնուած սաների բարոյական ու մտաւոր յառաջադիմութեանը զարկ տալու համար՝ որոշել է Երևանում բաց անել մի կենտրոնական գրադարան, որից կարողանայ օգտուել փախստական աշակերտութիւնը։

Ի նկատի առնելով այն հանգամանքը, որ մեր սաները սովորում են միդասեան, երկդասեան ու միջնակարգ դպրոցներում, նոր հիմնուելիք գրադարանը պէտք է ունենայ ոչ միայն մանկական գրքեր, այլ և մի առանձին բաժին հասակաւորների ընթերցանութեան համար։

Հոգաբարձութիւնս չունենալով իր տրամադրութեան ներքոյ գրադարանի համար առանձին գումար, սորանով կոչ է անում մեր յարգելի հեղինակներին, հրատարակիչներին և ողջ հասարակութեան, որ իրանց նուէրներով օգնութեան գան այդ նոր ձեռնարկութեան։

Նուէրներն ընդունւում են դրամ և գրքեր։

Նախագահ-հոգաբարձութեան,
Երևանի փոխ-թեմական՝ Խորէն Եպիսկոպոս

Անդամ-քարտուղար՝ Յովհ. Նիկողոսեան

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

Հ. Կ. Կոմիտէի Թիֆլիսի որբանոցների համար հարկաւոր է առնուազն միջնակարգ կրթութիւն ունեցող և փորձուած մի ընդհ. կառավարիչ. ցանկացողները մինչև դեկտեմբերի 15-ը թող դիմեն Կ. Հ. Բ. Ընկ. գրասենեակը՝ Որբանոցների յանձնաժողովին։

---

**Բ Ր Դ Է** և այլ տեսակ գործուածքներ, պատրաստուած փախստականների ձեռքով, ծախւում են Հայոց Կենտրոնական Կոմիտէի արհեստանոցում, Գանովսկայա փողոց № 3։

---

Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Հրատարակութեամբ լոյս տեսաւ և վաճառւում է

**ԱՐԻՍՏԱԿԷՍ ՓԱՐԻՄՈՒՋԵԱՆԻ**

## „ԹԷ ԻՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԳՐԱԴԱՐԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ ՀԻՄՆԵԼ ԵՒ ԿԱՌԱՎԱՐԵԼ“

ԳՐՔՈՅԿԸ

ԳԻՆԸ 10 ԿՈՊ.

Դիմել Կ. Հ. Բ. Ը-թեան գրադարանին՝ Абасъ-Абадская 7. կամ թէ «Գիր» գրախանութին, Вельяминовская улица.

---

## Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայեւնայի Գլխաւոր Կոմիտէի

նպաստներով հայ փախստական երեխաների համար բացուած և բացուելիք դպրոցների համար հարկաւոր են

## ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐ

(Թիւրքահայ և ռուսահայ)

Դպրոցների գործը ղեկավարելու համար ընտրուած **ԴՊՐՈՑԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ** որոշելով կազմել ուսուցչական ցանկ, առաջարկում է ցանկացողներին պաշտօնավարել վերոյիշեալ դպրոցներում, փութալ յայտնել Խորհրդին մանրամասն տեղեկութիւններ, թէ որտեղից են, քանի՛ տարեկան են, քանի՛ տարի ուսուցչական պաշտօն են վարել, ո՛ր դպրոցումն են աւարտել իրենց ուսումը։ Պէտք է դիմել այս հասցէով՝ «Հայ Գաղթականական Ուսումնարանների Դպրոցական Խորհրդին», Училищному Совѣту школъ для дѣтей бѣженцевъ, Тифлисъ, Абасъ-Абадская, 7.

---

Անգլիերէնի քաջ ծանօթ Ե. Սահակեան մատչելի գներով Անգլիերէն լեզուի դասեր է տալիս. ցանկացողները թող դիմեն Межевая, 28.

---

Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած

## կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի

արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և դիւանական գրքեր։

Դիմել Գանովսկայա փող. ա. Մանթաշեանի։

---

Քարվանսարայում (Ղազախի գաւառ) բնակուող Սոնա Ամիրաղեանի 16-ամեայ որդին՝ Համազասպ Մուշեղեան Առաքելեանցը 14 ամսից ի վեր է որ կորած է. տեղը իմացողէն խնդրւում է յայտնել անմիջապէս Հ. Բ. Ընկ. Քարվանսարայի ճիւղի վարչութեան։

3 — 3

---

ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ **„ՎԱՆ-ՏՈՍՊ“** ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ (1916 Նոյ. 27—1917 Նոյ. 20)

Նոյն ուղղութեամբ և ճոխացրած ծրագրով

**Բ Ա Ժ Ա Ն Ո Ր Դ Ա Գ Ի Ն Ն Է**

Ռուսաստանում տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ., երեք ամսուան 1 ռ. 75 կ.։ Պարսկաստանում՝ տարեկան 7 ռ., կէս տարուան 4 ռ.։ Ամերիկայում՝ տարեկան 3 դոլար, կէս տարուան 1, 75 դ.։ Եւրոպայում տարեկան 15 ֆր., կէս տարուան 8 ֆր.։

«Վան-Տոսպ»-ին վերաբերեալ նամակները, հեռագրերը և դրամը պէտք է ուղարկել միմիայն խմբագրութեան հասցէով։ «Վան-Տոսպ» շաբաթաթերթը ունի իւր յատուկ խմբագրական կազմը և որև է առընչութիւն չունի «Աղբիւր»-ի և «Տարազ»-ի խմբագրութեան հետ։

«Վան-Տոսպ»-ի հասցէն՝ Тифлисъ, Головинск. пр. № 41. Редакція арм. журнала «Ванъ-Тоспъ» կամ Rédaction du jonrnal armenien „Yan-Tosp“. Russie, Tiflis, Golovinski pr. № 41

1—3

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 50

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Ղուրդուղուլի Մոսկուայի հայկական կոմիտէի 2-րդ խմբի որբանոցի որբերի անուանացուցակը*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայրը | Տարիքը | Գրագէտ է | Ծնողք ունի | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Մարտիրոսեան Անուշ | (Ալաշկերտ) Դիադին | 13 | — | ոչ | |
| 2 | » Գայծառ | » | 11 | — | › | |
| 3 | Գէորգեան Վարդուհի | » Զօրկան | 7 | — | մայր | Մայր՝ Զօրկան |
| 4 | Մովսէսեան Ասանէթ | " Ազատև | 14 | — | ոչ | Եղբայր՝ Կարս |
| 5 | Կարապետեան Մանուկ | » Համառ | 8 | — | » | Եղբայր՝ Շահրիար |
| 6 | Բաղդասարեան Եփրեմ | » » | 9 | — | » | Քեռին Մօլա-Պայազէդ |
| 7 | Ներսէսեան Անուշ | » Խօշան | 11 | — | » | Հօրքոյր՝ կորսուած |
| 8 | » Մինաս | » » | 8 | — | " | › » |
| 9 | « Զաքար | » » | 6 | — | " | » " |
| 10 | Արշակեան Յակոբ | (Ղարաքիլիսէ) Իրից | 8 | — | " | Հօրեղբ.՝ Ղարաքլ. Կար. |
| 11 | » Զարզանդ | » " | 6 | — | » | » " |
| 12 | » Զապէլ | › » | 3 | — | « | » » |
| 13 | Կարապետեան Նունիկ | (Թիմար) Խաւենց | 12 | — | հայր | Հայր՝Պոլիս եղ. եք. Խա. |
| 14 | Միրզոյեան Ալմաստ | " » | 12 | — | ոչ | Եղբայր՝ Աշտարակ |
| 15 | Մեսրոպեան Սեդրաք | » » | 12 | այո | » | Հօրեղբայր՝ Ամերիկա |
| 16 | Գալստեան Հռիփսիմէ | (Արտազ) Կայմազ | 13 | — | » | |
| 17 | Բաղդասարեան Սիմէօն | " » | 13 | — | › | |
| 18 | Մովսէսեան Խամէ | » » | 4 | — | մայր | Մայր՝ Կայմազ |
| 19 | Սերոբեան Գայծառ | » » | 4 | — | ոչ | |
| 20 | Խաչիկեան Սիսէ | » " | 8 | — | » | |
| 21 | Սրմենակեան Մաքրուհի | (Արճակ) Սեան | 9 | — | › | Եղբայր՝ Շամօ |
| 22 | Կարապետեան Սուրէն | « | 13 | — | » | Եղբ. և քոյր անյայտ |
| 23 | Մովսէսեան Իսկուհի | " Կղչէ | 10 | — | » | Հօրեղբայր՝ Մարգարա |
| 24 | Սահակեան Երանուհի | (Վանտոսպ) Զօրավանց | 10 | — | › | Քեռին կորսուած |
| 25 | Պետրոսեան Յարութիւն | › Արտամետ | 10 | — | » | Հօրաքոյր Մ. Շահր. |
| 26 | » Լեւոն | » » | 7 | — | » | « |
| 27 | Գալստեան Նունիկ | » Դարման | 14 | — | մայր | Մայր՝ Վան |
| 28 | » Զարգար | " » | 7 | — | ոչ | " " |
| 29 | Զաքարեան Յովհաննէս | Նորդուզ | 11 | այո | » | |
| 30 | Մկրտչեան Սարիբէկ | (Թիմար) Տիրամէր | 12 | այո | ոչ | |
| 31 | Յարութիւնեան Մարգար | (ՀայոցՁոր)Նարատենց | 5 | — | » | Հօրեղբօր տղան կամ. |
| 32 | Յովսէփեան Ազնիւ | (Գուլանըր)Համզաշէյխ | 8 | — | » | Հօրեղբայր՝ Թիֆլիս |
| 33 | Մարտոյեան Վահան | » Կոփ | 10 | — | › | |
| 34 | Ղուկասեան Հրանտ | (Մուշ) Խասգիւղ | 10 | — | " | « » |
| 35 | Խաժոյեան Մկրտիչ | » » | 8 | — | " | |
| 36 | Յարութիւնեան Սիրանուշ | Կարին | 12 | — | մայր | Մայր՝Կարս եղբ. Խնուս |
| 37 | Իսրայէլեան Իսգարեր | (Խնուս) Խալչաւուշ | 12 | — | ոչ | Եղբայր և քոյր » |
| 38 | Վահանեան Սաթենիկ | » Կարաչօպան | 10 | — | " | Հօրեղբայր՝ Կարս |
| 39 | Մելքոնեան Շուշիկ | » Խալչաւուշ | 11 | — | " | |
| 40 | Հերքոյեան Եւգինէ | » " | 10 | — | » | |
| 41 | Եզնոյեան Նարեկ | » Կոտակվանդ | 11 | — | հայր | Հայր՝ Երզնկա |
| 42 | Մելոյեան Ֆիտոն | » Կովանդ | 8 | — | ոչ | |
| 43 | Խաչատուրեան Յարութիւն | » Կարաչօպան | 16 | այո | » | |
| 44 | Տէր Պօղոսեան Մովսէս | » Աղջամելիք | 13 | — | » | |
| 45 | Մարտիրոսեան Վարդգէս | » Կարաչօպան | 5 | — | • | |
| 46 | Մաթոսեան Սոֆիա | » Հարամիկ | 14 | — | " | Հօրեղբայր՝ Կարին |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 47 | Նազարեան Խաչատուր | (Բղի) Լիճք | 7 | — | » | |
| 48 | Մկրտչեան Կարապետ | Աշղալա | 11 | այո | » | Քեռին Կարս, Հօրեղբ. Սար. |
| 49 | » Աղէկ | » | 8 | — | „ | „ » „ |
| 50 | Մարտիրոսեան Գէորգ | » | 8 | — | » | „ » „ |
| 51 | » Նունիկ | » | 5 | — | „ | „ » » |
| 52 | Յովհաննիսեան Արուսեակ | (Բղի) Լիճք | 6 | — | „ | |
| 53 | Տիփանեան Եղիազար | (Դերջան) Ջխնլոց | 6 | — | » | |
| 54 | Խաչատրեան Ստեփան | » » | 5 | — | „ | |
| 55 | Նշանեան Տիգրան | (Դերջան) Սարդալա | 7 | — | հայր | Հայր՝ կորած |
| 56 | Նշանեան Հերիքնազ | » „ | 13 | — | ոչ | Հօրեղբայր՝ Կարին |
| 57 | Յարութիւնեան Խաչատուր | » » | 6 | — | „ | |
| 58 | Ոսկեան Շուշիկ | » « | 4 | — | » | |
| 59 | Եղիշեան Մարիամ | (Դերջան) Հողէկ | 7 | — | ոչ | Հօրաքոյր՝ Ղուրդուղ. |
| 60 | Մարկոսեան Ղազարեր | » » | 10 | — | ոչ | |
| 61 | Ռուբէնեան Ազնիւ | „ Փակարէջ | 2 | — | » | |
| 62 | Առաքելեան Սիմոն | » Կուրդուլ | 10 | — | „ | |
| 63 | Բալոյեան Մինաս | » Խաս գիւղ | 8 | — | » | |
| 64 | Պետրոսեան Սեդրաք | » Ուխտաձոր | 8 | — | » | |
| 65 | Գրիգորեան Փիլիպպոս | „ Ումուդում | 11 | այո | » | Հօրեղբայր՝ Կարս |
| 66 | Լուսիկ | ? | 4 | — | » | |
| 67 | Քրիսթինէ | ? | 4 | — | » | |
| 68 | Գրիգոր | ? | 2 | — | „ | |
| 69 | Ստեփանեան Շուշիկ | (Դերջան) ? | 3 | — | | |
| 70 | Սարգսեան Մկրտիչ | Բաշ գիւղ | 5 | — | հայր | Հայր՝ Կարս |
| 71 | » Հրաչեայ | « | 3 | — | հայր | » » |
| 72 | Բարսեղեան Հայկազուն | Գոմք | 11 | այո | ոչ | |
| 73 | Պետրոսեան Արմենակ | Խաչ գիւղ | 12 | „ | » | |
| 74 | Յովհաննէս | « | 10 | „ | „ | |
| 75 | Կարապետեան Երուանդ | Բագրիչէն | 13 | „ | „ | Քեռին՝ Կարս |
| 76 | Մարտիրոսեան Մկրտիչ | Երկնիստ | 12 | » | » | |
| 77 | Եղիայեան Տիգրան | (Դերջան) Ջխնլոց | 11 | » | „ | |
| 78 | Միսաքեան Կարապետ | » Վան | 11 | — | » | |
| 79 | Յարութիւնեան Դաւիթ | » Կոթեր | 14 | այո | » | Հօրեղբօր տղան՝ կամ. |
| 80 | Գալուստեան Սարգիս | » Փակարջ | 11 | „ | „ | Եղբայր՝ Կարին |
| 81 | „ Խնկարեր | » » | 9 | » | » | „ « |
| 82 | Յարութիւնեան Գրիգոր | (Բղի) Լիճք | 12 | — | „ | |
| 83 | Ալէքսանեան Եղիազար | (Դերջան) Հողեկ | 13 | — | հայր | Հայր՝ Ռումանիա |
| 84 | Բալիկեան Ռուբէն | » Փակարջ | 12 | այո | մայր | Մայր՝ Ղուրդուղուլ |
| 85 | Գրիգորեան Նշան | » Գոմք | 11 | » | ոչ | Հօրեղբայր՝ Կարին |
| 86 | Համբարձումեան Անդրանիկ | (Բղի) Լիճք | 9 | — | հայր | Հայր՝ Ամերիկա |
| 87 | Ռաֆայէլեան Հայկ | Կղբելիսէ | 11 | — | ոչ | Հօրեղբայր՝ անյայտ |
| 88 | Յարութիւնեան Մարտիրոս | (Կարին) Օձնեցի | 10 | — | ոչ | |
| 89 | Ազարարեան Գրիգոր | (Դերջան) Կուրդուլ | 8 | այո | » | Քոյր՝ Սարիղամիշ |
| 90 | Գալստեան Աբէլ | „ Խաչ գիւղ | 5 | — | „ | |
| 91 | Պօղոսեան Կուդրաթ | » Փակարէջ | 7 | — | հայր | Հայր՝ Սարիղամիշ |
| 92 | Անթառամ | „ » | 5 | — | ոչ | |
| 93 | Ռաֆայէլեան Յարութիւն | » Խարխին | 13 | այո | ոչ | Եղբայր՝ կամաւոր |
| 94 | Զաքարեան Եղիա | » Փէրիզ | 14 | » | „ | » Ռումինիա |
| 95 | Պօղոսեան Խաչատուր | » Հողէկ | 15 | » | » | Հօրեղբայր՝ Կարս |
| 96 | Յակոբեան Գալուստ | » Կոթեր | 15 | „ | » | Հօրեղբայրներ՝ Կարս |
| 97 | Տէր-Տաճատեան Լեւոն | Բագրիչէն | 14 | » | » | Հօրեղբայր՝ Կարին |
| 98 | Մանուկեան Անդրանիկ | (Դերջան) Սարդալեայ | 13 | „ | „ | Եղբայրներ՝ Ամերիկա |
| 99 | Ներսէսեան Թորոս | » Խաչ գիւղ | 15 | — | մայր | Մայր և եղբայր Կարս |
| 100 | Վարդանեան Օհաննէս | » » | 10 | — | ոչ | Հօրեղբօր տղան Թիֆ. |
| 101 | Գրիգորեան Ռուբէն | (Բասեն) Միջալոփ | 10 | — | „ | Հօրեղբօր կին՝ Կարս |
| 102 | Յարութիւնեան Մկրտիչ | (Դերջան) Վժան | 13 | այո | հայր | Հայր՝ Բաքու |
| 103 | Գրիգորեան Ղուկաս | » » | 12 | — | ոչ | Եղբայր՝ Ռումանիա |
| 104 | » Յարութիւն | „ Փակարէջ | 14 | այո | » | Քոյր՝ Կարին |
| 105 | Խաչատուրեան Գրիգոր | » Փերիզ | 10 | — | „ | |
| 106 | Գրիգորեան Յարութիւն | » Մանձ | 12 | — | » | Եղբայր՝ կամաւոր |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 107 | Ստեփաննեան Գրիգոր | Թարփուն | 8 | — | » | |
| 108 | Մկրտչեան Երուանդ | (Դերջան) Հողիկ | 7 | — | » | |
| 109 | Մանուկեան Օննիկ | (Խարբերդ) Կըլըքիլիսէ | 5 | — | » | |
| 110 | Հոբարեան Հեղինէ | (Կարին) Բաբերդ | 4 | — | » | |
| 111 | Գրիգորեան Նուարդ | (Դերջան) Փերիզ | 11 | — | " | Քեռի՝ Սարիղամիշ |
| 112 | Միսաքեան Անուշ | (Դերջան) Խաչ գիւղ | 6 | — | այո | Մայր՝ Կարին |
| 113 | Յարութիւնեան Զայրմայր | » | 8 | — | ոչ | Քեռին՝ Կարս |
| 114 | Վարդանեան Զուարթ | (Դերջան) ? | 6 | — | » | |
| 115 | Սիրաքեան Զարուհի | » Փակարջ | 6 | — | » | Քեռին՝ անյայտ |
| 116 | Խաչատուրեան Արամ | Հինձք | 16 | այո | » | » « |

Ցուցակ Ախալցխայի որբանոցում տեղաւորուած որբերի

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Գրիգոր | Դունիկ | 11 | — | — | ոչ |
| 2 | Աւետիսեան Արեգնազ | Ծղակ | 9 | անյ-յտ | — | » |
| 3 | Աւետիսեան Հմայեակ | Թիֆլիս | 10 | հ·մայր | Թիֆլիս | " |
| 4 | Աշոյեան Ազնիւ | Խոզէր | 6 | — | — | » |
| 5 | Ազիզեան Վաղարշակ | Կիւնենց | 6 | — | — | " |
| 6 | » Ազիզ | " | 12 | — | — | այո |
| 7 | Ախթոյեան Գրիգոր | Շարան | 8 | — | չգիտէ | ոչ |
| 8 | Աւէեան Յարութիւն | Կուշտեան | 13 | մայր | չգիտէ | այո |
| 9 | Արդարեան Լուսիկ | Վան | 5 | հայր | Թիֆլիս | ոչ |
| 10 | » Վարդանուշ | | 3 | - | " | » |
| 11 | Գասպարեան Ղալամ | Գունանեմիր | 9 | — | — | » |
| 12 | Գրիգորեան Խորէն | Էլրիս | 8 | " | — | » |
| 13 | Գաբրիէլեան Գրիշա | Նուխի | 10 | մայր | Թիֆլիս | այո |
| 14 | Գրիգորեան Մարտիրոս | Ալաշկերտ | 12 | » | — | ոչ |
| 15 | Գասպարեան Անդրանիկ | Խալչաուշ | 11 | մայր | Կարս | այո |
| 16 | Գրիգորեան Արշալոյս | Հընում | 6 | " | — | ոչ |
| 17 | Գրիգորեան Մերինազ | Ակրակ | 11 | " | — | » |
| 18 | Գրիգորեան Երուանդ | Մուշ | 10 | » | — | » |
| 19 | Թոմասեան Սիրանուշ | Շատախ | 9 | » | — | » |
| 20 | Թոխիկեան Արմենակ | Փախնէր | 15 | մայր | Երևան | այո |
| 21 | » Արտաշէս | » | 9 | " | " | ոչ |
| 22 | Խաչիկեան Արամ | Վարդով | 7 | » | — | » |
| 23 | Խաչատրեան Աւետիս | Ախալցխա | 9 | " | — | » |
| 24 | » Ռաֆֆիկ | » | 6 | " | » | » |
| 25 | Խաչիկեան Վահան | Նոր գիւղ | 6 | մայր | Արդահ. | » |
| 26 | Խաչիկեան Խաչիկ | Քօշ | 10 | » | — | " |
| 27 | Կարապետեան Հոռոմ | Շուշէտ | 6 | հ.մայր | Արդահ. | " |
| 28 | Կարէեան Շուշիկ | Գունդեմիր | 7 | » | — | " |
| 29 | Համբարձումեան Պետրոս | Գունանեմիր | 12 | մայր | — | այո |
| 30 | » Երանոս | » | 5 | » | " | ոչ |
| 31 | Հերէեան Սաթենիկ | Գունանեմի | 10 | » | Ախալց. | " |
| 32 | Հայրիկեան Հայրիկ | Կարճէտ | 16 | » | — | այո |
| 33 | Համբարձումեան Դաւիթ | Արդահան | 10 | " | — | ոչ |
| 34 | Ղազարեան Մաւի | Խնուս | 6 | մայր | Քրդ. տար. | " |
| 35 | Մարգարեան Եղնիկ | Ցրօնք | 8 | » | — | » |
| 36 | Մանուկեան Նիկոլ | Խնուս | 6 | » | — | " |
| 37 | Մանուկեան Մուշեղ | Խնուս | 7 | հ.մայր | տաճ. գին. | » |
| 38 | Մանուկեան Պետրոս | Մանդան | 10 | — | — | » |
| 39 | Մանուկեան Վաղարշակ | Աուէն | 10 | մայր | Էջմիած. | » |
| 40 | Մուխսի-Անոյեան Բարկէն | Խալչաուշ | 11 | — | — | այո |
| 41 | Մուրադեան Խորէն | Գում-գում | 8 | — | — | ոչ |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 42 | Մարտոյեան Խոսրով | Գունտեմիր | 12 | — | — | այո |
| 43 | » Վանօ | " | 4 | " | — | ոչ |
| 44 | Մուշոյեան Դերենիկ | Ցխաւան | 6 | — | — | » |
| 45 | Մկրտչեան Մանուկ | Ցիպան | 8 | — | — | » |
| 46 | Մխիթարեան Ենովք | Շանիկ | 12 | — | — | այո |
| 47 | Մխիթարեան Անդրանիկ | Շեխ-Աղուր | 10 | մայր | Թիֆլիս | » |
| 48 | Միլոյեան Սօսէ | Զաւուրմա | 3 | — | — | ոչ |
| 49 | Մարտիրոսեան Նազար | Շաւշէտ | 7 | — | Արդահ. | » |
| 50 | Յարոյեան Մուշեղ | Իրիզակ | 12 | — | — | » |
| 51 | Յակոբեան Սաթենիկ | Սոր Դար | 15 | — | — | » |
| 52 | Յարութիւնեան Զուարթ | Հրսոնով | 7 | — | չգիտէ | » |
| 53 | Յովէեան Առաքել | Օրգնոց | 8 | հայր | — | » |
| 54 | Յովհաննիսեան Վարդգէս | Հիլի | 11 | հայր | — | այո |
| 55 | Յովհաննիսեան Եղիսաբեթ | Մայրմէտ | 10 | — | — | ոչ |
| 56 | Յարթէնեան Մանուկ | Դրգը-լաղա | 13 | — | — | այո |
| 57 | Նախոյեան Վարդան | Թացու | 11 | մայր | Գանձակ | " |
| 58 | Ներսիսեան Արուսեակ | Հրամիկ | 7 | — | — | ոչ |
| 59 | Ներսիսեան Աւետիս | Գանձակ գ. | 9 | մայր | Էջմիած. | այո |
| 60 | Շառոյեան Քրիստ | Քարձոր | 10 | — | — | ոչ |
| 61 | Պօղոսեան Գրիգոր | Ըմրրան | 8 | մայր | Էջմիած. | » |
| 62 | Պալասանեան Մանուկ | Նորգիւղ | 15 | — | — | » |
| 63 | Պօղոսեան Ռուբէն | Օղնուտ | 8 | — | — | » |
| 64 | Պօղոսեան Յարութիւն | Ըմրրան | 6 | — | — | » |
| 65 | Պետրոսեան Անդրանիկ | Կարտկոն | 12 | — | — | » |
| 66 | Ջորջեան Եղիազար | Ջանիկ | 13 | մայր | Էջմիած. | այո |
| 67 | Ստեփանեան Երանոս | Գունտեմիր | 11 | — | — | » |
| 68 | » Անդրանիկ | " | 8 | " | — | ոչ |
| 69 | Սուքիասեան Ազատ | Ղաչան | | | | " |
| 70 | Սրգէեան Գուլէ | Ծղակ | 4 | հայր | — | » |
| 71 | » Նազէ | » | 10 | " | — | » |
| 72 | » Աշրութ | " | 9 | " | — | » |
| 73 | Սրգէեան Հայրիկ | Խալչաւուշ | 10 | — | — | » |
| 74 | " Լուսիկ | " | 9 | " | — | » |
| 75 | Սրգոյեան Հոռոմ | Գունտեմիր | 5 | — | — | » |
| 76 | Սալոյեան Եղիշէ | Քաչաղինձ | 8 | — | — | " |
| 77 | Սիմէօնեան Ռուբէն | Գում-գում | 7 | — | — | » |
| 78 | Ստամբօլցեան Միքայէլ | Վան | 9 | — | — | այո |
| 79 | Սահակեան Անուշաւան | Արճէշ | 10 | — | — | » |
| 80 | Սոսոյեան Թոմաս | Թացու | 10 | հայր | Գանձակ | ոչ |
| 81 | Սերոպեան Գէորգ | Աղագրեր | 11 | հայր | Թիֆլիս | » |
| 82 | Սաֆարեան Մկրտիչ | Թոնաշէն | 10 | — | — | » |
| 83 | Վարդանեան Թոմաս | Նարթիկ | 11 | — | — | այո |
| 84 | Վրդէեան Գեղամ | Խալչաւուշ | 13 | — | — | » |
| 85 | Վարդանեան Հայկազ | Խալչաւուշ | 6 | — | — | ոչ |
| 86 | Տէր-Վարդանեան Սամսոն | Պեշու | 11 | — | — | » |
| 87 | Վարդանեան Արտաշ | Խալչաւուշ | 4 | — | — | » |
| 88 | Տէր-Սարգսեան Գարեգին | Խաս գիւղ | 12 | — | — | |
| 89 | " Արամ | » | 10 | հ.մայր | Գրագետ | |
| 90 | Քերովբեան Յարութիկ | Ախալցխա | 8 | — | » | » |
| 91 | Կարոյեան Սամսոն | Դերիկ | 11 | — | — | » |
| 92 | Մովսէսեան Արգար | Խալչաւուշ | 10 | | | |
| 93 | Մարկոսեան Արամ | Գունտեմիր | 8 | | | |
| 94 | Մանուկեան Նուշրէվան | Խնուս | 6 | | | |
| 95 | Գրիգորեան Էրինաս | Ակրով | 10 | | | |
| 96 | Ալեքսանեան Շողակաթ | Օքրոպակ | 12 | — | — | այո |
| 97 | " Ղազարոս | " | 10 | — | — | ոչ |
| 98 | " Մարիամ | " | 8 | — | — | » |
| 99 | » Սրբենազ | » | 4 | — | — | » |
| 100 | Տէր-Մանուէլեան Նազիկ | " | 9 | — | — | այո |
| 101 | " Արտաշէս | " | 7 | — | — | ոչ |
| 102 | » Ազնիւ | » | 5 | — | — | » |
| 103 | Վարդանեան Միհրան | Բաշկալա | 9 | — | — | » |